

Նկ. ՋԱՆԻ ՏԱՄԳԱՐՅԱՆԻ

# ԼԵՌՆԱՅԻՆ ԱՐԾԻՎԸ


*ՍԱՄԱԹ ՇԱՔԻՐ*
*(Թաթար բանաստեղծ)*


*Սովետական Միության կրկնակի հերոս*
*ՆԵԼՍՈՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*
*հիշատակին*

Ահա՛ Հայաստան երկիրը քո,
Այստեղ է քո տունն հայրենական,
Ապրել ես այս ջինջ երկնի ներքո
Ու կրել փողկապ պիոներական:
Այստեղ բոնոցի ես խաղացել,
Նայել կարոտով Արարատին
Եվ արշալույսն ես երկար դիտել՝
Կանգնած լեռների սեգ գագաթին:
Որոտն ես լսել դու ամպերի,
Ունկնդրել գետի խոլ շառաչին,
Ծիրիմների մոտ քաջ պապերիդ
Տվել երդումը քո առաջին:
Ու հավատարիմ քո երդումին,
Ճախրել ես խիզախ բարձունքներում:
Ու չես խնայել կյանքդ անգին
Դու Հայրենական մեծ մարտերում:

Այստեղ Հայաստան երկիրն է քո,
Այստեղ է տունը քո հայրական,
Բայց պաշտպանել ես դու քո կրծքով
Երկիրը ամբողջ սովետական:
Մայր հայրենիքը օրհնել է քեզ.
«Հաղթանակ տարած եկ դառնաս տուն».

Երկինք ես թռել դու շանթի պես
Եվ հրաշքներ ես գործել օդում:
Հարվածում էիր ֆաշիստներին
Ու նրանց գլխին ռումբեր տեղում.
Արծիվ էիր սեգ դու լեռնային,
Ու կրծքիդ երկու աստղ էր շողում:
Եվ համբավը քո թևեր առած՝
Ճախրում էր, անցնում երկրե-երկիր,
Բայց ասուպի պես բոցավառված՝
Ընկար դու երկնից ու մարեցիր...
Ողբաց մայրը քո կայծակնահար,
Ողբացին մարդիկ մեր ողջ երկրում.
Հերոսի մահով անմահացար
Եվ կապրես հավետ մեր սրտերում:
Ու քո մասին են դեռ շշնջում
Ջրերը Բալթիկ ծովում անծիր.
«Այստեղ է հավետ խաղաղ ննջում
Նելսոնը՝ հայոց խիզախ արծիվ...»

Փոխադրությունը ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆԻ



digitised by A.R.A.R.@

# Անպարտելի զորավարը

(Բալլադ)

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

Հեծյալ գունդն է սլանում
Տափաստանով լայնարձակ.
Մեկը դրոշն է տանում՝
Գնդի առջևը անցած։
Փողփողում է դրոշն ալ
Տափաստանի մեջ կանաչ,
Սլանում է հաղթաքայլ՝
Նա արևին ընդառաջ։
Ահա ելնում է արփին,
Ցրած զորքը ամպերի,
Ու դոփում են դեռ ճամփին
Սմբակները ձիերի։
Նժույգները փրփրաբաշ
Խրխնջում են ու դոփում,
Սմբակների տակ ճամփան
Սրտի պես է տրոփում։

Հեծյալ գնդով Գայն է դա,
Սամարա է սլանում,
Փնչում է ձին սպիտակ,
Ալ դրոշն է ծածանում։
Սլանում է ու հիշում
Սրամարտը դժնդակ.
Այգաբացի մշուշում,
Վոլգայի մոտ, գյուղի տակ։
Զանգերն էին ղողանջում
Առավոտվա պաղ ժամին,
Սրերն էին շառաչում,
Գետից փչում էր քամին։
Վիրավորներ անհամար,
Էսկադրոնը ցիրուցան.
Լողում էին գետն ի վար
Ձիերն անտեր մնացած։

Նա հիշում է սպիտակ
Գվարդիական սպային,
Որ փնչում էր բեղի տակ
Ու գերին էր նա Գայի։
— Գիտեմ, որ հայ ես անտուն,
Նույնիսկ քաջ ես ու ջահել,
Ի՞նչ գործ ունես սակայն դու,
Ռուսաստանի բախտի հետ։—



Նկ. ՀԵՆՐԻԿ ՄԱՄՅԱՆԻ

digitised by A.R.A.R.@



Պատասխանել էր նրան
Գայը հպարտ, աններում.
— Որ այս դրոշն հուրհրա
Նաև հայոց լեռներում,
Որ ցարական Ռուսիայի
Կրնկի տակ չհեծի
Ո՛չ բուռլակը Վոլգայի
Եվ ո՛չ էլ հայ գյուղացին:
Որ ապրեն մի հարկի տակ
Ազատ ազգերը բոլոր,
Ունենան մի նպատակ
Եվ կառուցեն կյանքը նոր:

Սլանում է ճերմակ ձին
Հեծյալ գնդի առջևից,
Տափաստանի մեջ անծիր
Նա ժպտում է ցնծալից:
Սլանում է ու հիշում
Հայոց լեռներն հեռավոր,
Կապո՜ւյտ-կապույտ մշուշում
Ժայռակուտակ դաշտ ու ձոր:
Այնտեղ չկա տափաստան,
Ինչպե՞ս կարող էր վարգել
Իր նժույգը սպիտակ,
Այդպես արագ, անարգել:
Այնտեղ ժայռեր ու ձորեր
Ու քարափներ թախծալի,
Կարող են ցած գլորել
Ամենալավ հեծյալին...



Սլանում է ճերմակ ձին
Հեծյալ գնդի առջևից,
Տափաստանի մեջ անծիր
Նա ժպտում է հրճվալից:
Հերոսի պես լեգենդար
Նա մարտ մղեց աննկուն,
Նրա նժույգն սպիտակ
Վագքից փրփուր էր թքում:
Հեռագրեց Իլյիչին,
Որ Սիմբիրսկն է ազատված,
Որ էլ հոգին չտանջի
Այդ անիծյալ վերքը բաց:
Նա ուրախ էր կրկնակի,
Իր սրի հետ ու խղճի,
Որ առումը քաղաքի՝
Կմեղմեր ցավն Իլյիչի...

Խրխնջում է ճերմակ ձին,
Պողպատ պայտերն են շողում,
Տափաստանում այդ անծիր
Ալ դրոշն է փողփողում:
Փողփողում է դրոշն ալ
Տափաստանի մեջ կանաչ,
Սլանում է հաղթաքայլ՝
Նա արևին ընդառաջ:
Կարծես շողում են մեկից
Երկու արև շողարձակ,
Մեկը՝ կապույտ երկնքից,
Մեկը՝ դաշտի մեջ անծայր...

## ՀՈՐՍ ՎԵՐԱԴԱՐՁԸ

*ՅՈՒՐԻ ԼՈՒՑԿԵՎԻՉ*

Ես ու մայրիկս հայրիկիս գալուն
Սպասում էինք ամե՜ն, ամեն ժամ:
Մենք հուսով էինք.
Չէ՞ որ աշխարհում
Սխալվում է և գնդակը դաժան:
Նիհար ու հոգնած կմտնի նա ներս,
Կփարվի նա մեզ կարոտով երկար:

Բայց օրերն էին գլորվում մեկ-մեկ,
Եվ իմ հայրիկը չկար ու չկար:
Սակայն մենք շատ ենք միասին եղել,
Նա եկել է տուն գիշերվա կեսին
Եվ մտերմաբար հարցումներ է արել
Իմ ապրած ամեն մի օրվա մասին:



841-73
7040

digitised by A.R.A.R.@






Լ. ՊԱՆՏԵԼԵՅԵՎ

Նկ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ

Տակավին չէր լուսացել և փողոցների կապույտ լամպիկները դեռ վառվում էին գլխավոր մուտքերի ու դարբասների վրա, իսկ Վալոդիկ Բեսսոնովն արդեն դպրոց էր շտապում: Նա շատ արագ էր վազում՝ նախ, որ փողոցում ցուրտ էր (ասում էին, թե այս տարվա նման սառնամանիք Լենինգրադում արդեն հարյուր տարի է չէր եղել), ապա նրա համար, որ Վալոդիկը այսօր շատ էր ցանկանում առաջինը դասարան մըտնել: Թեև նա շատ էլ ժրաջան ու աչքի ընկնող երեխա չէր:

Ուրիշ ժամանակ նա գուցե և ուշանալուց չքաշվեր: Իսկ հիմա՝ արձակուրդներից հետո առաջին օրը, չգիտես ինչու, չափազանց հետաքրքրական էր թվում հենց առաջինը գալ դպրոց և այնուհետև յուրաքանչյուր քայլափոխի ու ամեն տեղ ասել.

— Իսկ դուք գիտե՞ք, որ այսօր ես ամենից շուտ եմ եկել...

Նույնիսկ նա կանգ չառավ՝ դիտելու սպիտակ ներկված վիթխարի տանկերը, որոնք օրորվելով, խլացուցիչ աղմուկով այդ միջոցին անցնում էին փողոցով: Գուցե այդ այնքան էլ հետաքրքիր չէր. այժմ թերևս քաղաքում ավելի շատ տանկ կար, քան տրամվայ:

Վալոդիկը միայն մի վայրկյան կանգ առավ փողոցի անկյունում՝ ռադիո լսելու համար: Հաղորդում էին ռազմաճակատային վերջին լուրերը: Բայց դրանում էլ այսօր հետաքրքրական ոչինչ չկար: Հետախույզների որոնումներ և առանձին տեղամասերում՝ հրացանագնդացրային ու հրետանային փոխհրաձգություն...

Հանդերձարանում ևս տակավին վառվում էր կապույտ լամպիկը: Պառավ հանդերձապահը դատարկ կախարանների մոտ, գլուխը հենած տախտակե սեղանին, ննջում էր:

— Բարև՛, մորաքո՛ւյր,— գոռաց Վալոդիկը սեղանի վրա գցելով իր պայուսակը:

Պառավը վախեցած վեր թռավ, արագ թարթելով աչքերը:

— Ձեզ բարի լո՛ւյս: Բարի ախորժա՛կ,— սկսեց շաղակրատել Վալոդիկը՝ վերարկուն ու կրկնակոշիկները հանելով:— Ի՞նչ: Չէի՞ք սպասում: Իսկ գիտե՞ք, որ ես ամենից առաջ եմ եկել...

— Ա՜յ թե ինչպես ես սուտ ասում, փչա՛ն,— ասաց հանդերձապահը ձգվելով և հորանջելով:

Վալոդիկը զննական նայեց և կողքի կախարանի վրա նկատեց աղջկա մի փոքրիկ վերարկու՝ նապաստակի սպիտակ մորթե օձիքով:

Նա փորձեց տեսքից որոշել, թե դա ում վերարկուն է: Բայց չկարողացավ հիշել իրենց դասարանում նապաստակի մորթե օձիքով վերարկու ունեցող որևէ աղջկա:

«Ուրեմն այս աղջիկը ուրիշ դասարանից է,— մտածեց նա:— Դե, ուրիշ դասարանը հաշվի մեջ չի: Ինչ ուզում է լինի՝ ես առաջինն եմ եկել»:

Եվ հանդերձապահին «գիշեր բարի» մաղթելով, շտապ վերցրեց պայուսակն ու վեր սլացավ:

...Դասարանում առաջին նստարաններից մեկի վրա նստած էր մի աղջիկ: Բոլորովին անծանոթ աղջիկ էր՝ փոքրիկ, նիհար, զույգ խարտյաշ հյուսիկներին՝ կանաչ ժապավեններ:

— Բարի լո՛ւյս,— ասաց Վալոդիկը փոքրիկ աղջըկան,— բարի ախորժա՛կ: Ինչպե՞ս եք դուք այստեղ ընկել:

— Ես նորեկ եմ,— շատ հանգիստ պատասխանեց աղջիկը:

— Հա՜,— զարմացավ Վալոդիկը:— Իսկ ինչո՞ւ եք այսքան շուտ եկել:

Աղջիկը ոչինչ չպատասխանեց, ուսերը թոթվեց միայն:

— Գուցե դու քո՞ դասարանը չես մտել,— ասաց Վալոդիկը:

— Ո՛չ, ա՛յս դասարանն է,— պատասխանեց աղջիկը:— Չորրորդ «Բ»:

Վալոդիկը մտածեց, քորեց ծոծրակը և ասաց.

— Դե՛, իմացի՛ր, առաջինը ես եմ քեզ տեսել:

Նա մոտեցավ իր նստարանին, ուշադիր զննեց այն, չգիտես ինչու, ձեռք տվեց կափարիչին. ամեն ինչ կարգին էր, կափարիչը ինչպես հարկն է բացվում ու փակվում էր:

Այդ միջոցին դասարան մտան երկու աղջիկ: Վալոդիկը ուժգին փակեց նստարանի կափարիչը և գոռաց.

— Կումա՛չևա, Շմուլի՛նսկայա, բարև՛: Բարի



digitised by A.R.A.R.@

լո՛ւյս։ Մեզ մոտ նորեկ կա... Նրան ամենից առաջ ես տեսա...

Աղջիկները կանգ առան և նույնպես զարմանքով նայեցին նորեկին։

— Ինչպես թե՝ նորե՞կ։

— Այո՛,— պատասխանեց աղջիկը։

— Իսկ ինչո՞ւ ձմեռ ժամանակ։ Ի՞նչ է անունդ։

— Մորոզովա,— ասաց աղջիկը։

Այդ միջոցին հայտնվեցին մի քանի հոգի ևս։ Հետո՝ նորերը։ Եվ բոլորին Վալոդիկը հայտարարեց.

— Երեխանե՛ր, մեզ մոտ նորեկ կա։ Նրա անունը Մորոզովա է։ Ամենից առաջ ես տեսա նրան։

Նորեկին շրջապատեցին։ Սկսեցին դիտել, հարցեր տալ. քանի՞ տարեկան է, ի՞նչ է անունը։ Եվ ինչո՞ւ ձմեռ ժամանակ է գալիս դպրոց։

— Ես այստեղացի չեմ, դրա համար,— պատասխանեց աղջիկը։

— Ի՞նչ է նշանակում «այստեղացի չեմ»։ Ի՞նչ է, դու ռուս չե՞ս։

— Չէ՛, ռուս եմ, բայց Ուկրաինայից եմ եկել։

— Ո՞ր, Արևմտյա՞ն Ուկրաինայից։

— Ո՛չ, Արևելյան,— ասաց աղջիկը։

Նա պատասխանում էր շատ հանգիստ, կարճ, ու թեև բոլորովին չէր շփոթվում, բայց մի տեսակ տխուր էր, մտացրիվ, և մշտապես թվում էր, թե ուզում է հոգոց հանել։

— Մորո՛զովա, ուզո՞ւմ ես, արի միասին նստենք,— առաջարկեց Լիզա Կումաչևան։— Ինձ մոտ ազատ տեղ կա։

— Լավ, միևնույն է,— ասաց նորեկը և տեղափոխվեց Լիզայի նստարանին։

Այդ օրը համարյա ամբողջ դասարանը եկել էր սովորականից շուտ։ Այս տարի արձակուրդները կարծես արտակարգ և տանջալիորեն երկարեցին։

Ընդամենը երկու շաբաթ երեխաներն իրար չէին տեսել, բայց այդ ընթացքում ամեն մեկը ավելի շատ նորություններ ուներ, քան ուրիշ ժամանակ՝ ամբողջ ամառվա ընթացքում։

Վալոդիկ Բեսսոնովը սեփական նորություն չուներ, բայց «իր ականջներով» լսել էր, որ հերթում մի պառավ մյուսին ասել էր, թե իբր «իր աչքերով» տեսել է, թե ինչպես Պարգոլովում, գերեզմանոցի մոտ, պահակ միլիցիոները ատրճանակով խփել է ֆիննական ռմբակոծիչին...

Վալոդիկին չէին հավատում, գիտեին, որ փչան է, բայց և թողեցին, որ փչի, որովհետև, ինչ էլ լիներ, հետաքրքրական էր լսել և, բացի այդ, նա շատ ծիծաղելի էր պատմում։

Խոսակցությամբ տարված երեխաները մոռացել էին նորեկին և չէին նկատել, թե ինչպես անցավ ժամանակը։ Այդ ընթացքում բոլորովին լուսացել էր։ Եվ ահա միջանցքում զանգը հնչեց, հնչեց յուրօրինակ՝ բարձր և հանդիսավոր։

Երեխաները սովորականից արագ գրավեցին իրենց տեղերը։ Այդ ժամանակ շնչակտուր դասարան մտավ երկարասրունք Վերա Մակարովան։

— Երեխանե՜ր,— գոռաց նա,— գիտե՞ք նորությունը...

— Ի՞նչ։ Ի՞նչ նորություն։ Ինչի՞ մասին,— աղաղակեցին չորս կողմից։

— Գիտե՞ք... մեզ մոտ... մեզ մոտ... եկել է մի նորեկ։

— Հա՜, հա՜, հա՜,— ծիծաղեցին երեխաները,— նորությո՜ւն ասաց։ Վաղո՛ւց գիտենք։

— Նորեկ ուսուցչուհի,— ասաց Վերան։

— Ուսուցչուհի՞։

— Այո՛։ Էլեոնորա Մատվեևնայի փոխարեն։ Մի տեսնե՜ք...— Վերան երկար ձեռքերն իրար խփեց.— Լա՜վն է... ջահե՜լ... Աչքերը՝ կապույտ, իսկ մազե՜րը...

Նա չկարողացավ ավարտել նոր ուսուցչուհու պատկերը։ Դուռը բացվեց և շեմքին երևաց հենց նա՝ ինքը՝ իսկապես շատ երիտասարդ, կապուտաչյա, ոսկեգույն զույգ գիսակներով, որոնք պսակ էին հյուսել գլխի շուրջը։

Ուսուցչուհին հազիվ նկատելի ժպտաց, մոտեցավ իր սեղանին, դրեց թղթապանակը և գոչեց.

— Բարև՛, երեխանե՛ր։ Ահա թե ինչպիսի՜ն եք դուք։ Իսկ ինձ ասացին, որ դուք շատ փոքր եք։ Նստեցե՛ք, խնդրեմ։

Երեխաները նստեցին։ Ուսուցչուհին մի փոքր ետ ու առաջ քայլեց դասարանում, ապա կանգ առավ, նորից ժպտաց և շարունակեց.

— Եկեք ծանոթանանք։ Իմ անունը Ելիզավետա Իվանովնա է։ Իսկ ձե՞րը։

Երեխաները ծիծաղեցին։ Ուսուցչուհին մոտեցավ սեղանին և բացեց դասամատյանը։

— Օ՜, իսկապես դուք շատ եք։ Այնուամենայնիվ, եկեք ծանոթանանք։ Ո՞վ է Անտոնովան։

— Ես,— ասաց Վերա Անտոնովան՝ ոտքի ելնելով։

— Հապա, քո մասին մի քիչ պատմի՛ր,— ասաց ուսուցչուհին՝ նստելով։— Ի՞նչ է անունդ։ Ովքե՞ր են հայրդ ու մայրդ։ Որտե՞ղ ես ապրում։ Ինչպե՞ս ես սովորում։

— Սովորում եմ ոչինչ, լավ,— ասաց Վերան։

Երեխաները փռթկացին։

— Դե նստի՛ր,— ծիծաղեց ուսուցչուհին։— Կապրենք ու կտեսնենք։ Հետևյալը... Բարինովա՞...

Բարինովան ասաց, որ իր անունը Թամարա է, ապրում է հարևան տանը, մայրը բուֆետապան է, իսկ հայրը մահացել է, երբ ինքը դեռ փոքր էր։

Մինչ նա այս բոլորը պատմում էր, Վալոդիկ Բեսսոնովը նստարանի վրա անհամբեր այս ու այն կողմ



digitised by A.R.A.R.@

էր նետում իրեն: Նա գիտեր, որ հետևյալն իր ազգանունն էր և չէր կարողանում իր հերթին սպասել:

Ուսուցչուհին հազիվ էր տվել նրա անունը, երբ նա վեր թռավ և շաղակրատեց.

— Իմ անունը Վոլոդյա է. տասնմեկ տարեկան եմ: Հայրս վարսավիր է: Ապրում եմ Օրվողնի քրանցքի և Բորովոյի անկյունում: Ես մի շուն ունեմ, անունը՝ Տուզիկ...

— Հանգի՛ստ, հանգի՛ստ,— ժպտաց ուսուցչուհին:— Շատ լավ, նստի՛ր, բավական է, Տուզիկի մասին հետո կպատմես: Թե չէ քո ընկերների հետ ծանոթանալու համար ժամանակ չի մնա:

Այսպես, նա մեկը մյուսի ետևից, այբբենական կարգով, հարցրեց դասարանի կեսին: Վերջապես հերթը Նորեկին հասավ:

— Մորո՛զովա,— կանչեց ուսուցչուհին:

— Ելիզավե՛տա Իվանովնա,— գոռաց Վալոդիկ Բեսսոնովը՝ բարձրացնելով ձեռքը:— Այս աղջիկը նորեկ է: Նրա անունը Մորոզովա է. այսօր նրան ամենից առաջ ես եմ տեսել...

— Լա՛վ, լա՛վ,— ասաց Ելիզավետա Իվանովնան:— Է՞հ, ի՞նչ կա որ: Մորո՛զովա,— դիմեց նա Նորեկին,— դու էլ քո՛ մասին պատմիր նոր ընկերներիդ:

Նորեկը ծանր շունչ քաշեց և նայեց մի կողմ՝ անկյունին:

— Իմ անունը Վալյա է.— ասաց նա:— Ես շուտով տասներկու տարեկան կլինեմ: Ծնվել եմ Կիևում և միշտ այնտեղ եմ ապրել. հորս ու մորս հետ: Իսկ հետո...

Այստեղ նա կմկմաց և բոլորովին հանգիստ, միայն շրթունքներով ասաց.

— Հետո իմ հայրիկը...

Ինչ-որ բան նրան խանգարում էր խոսել:

Ուսուցչուհին հեռացավ սեղանի մոտից:

— Լա՛վ, Մորո՛զովա,— ասաց նա:— Բավական է: Հետո կպատմես:

Բայց արդեն ուշ էր: Դողդողում էին Նորեկի շրթունքները... Նա ընկավ նստարանին և բարձրաձայն, դասարանով մեկ, լաց եղավ:

Երեխաները տեղերից վեր թռան:

— Ի՞նչ պատահեց քեզ, Մորո՛զովա,— գոչեց ուսուցչուհին:

Նորեկը չպատասխանեց: Նա երեսը ծածկեց ձեռքերով և ամեն ջանք գործադրեց, որ զսպի արցունքները, բայց ինչ էլ արավ, ինչքան էլ սեղմեց ատամները, այնուամենայնիվ արցունքները հոսում ու հոսում էին, և նա լաց էր լինում ավելի բարձր, ավելի ու ավելի հուսակտուր:

Ուսուցչուհին մոտեցավ, ձեռքը դրեց նրա ուսին:

— Դե՜, Մորո՛զովա,— ասաց նա,— անուշի՜կս, դե՜, հանգստացի՛ր...

Լիզան նայեց նրան և տեսավ, որ ուսուցչուհին



digitised by A.R.A.R.@

կանգնած է՝ շրթունքը ատամի տակ, աչքերը պղտորված, շնչում է ծանր, ընդհատ-ընդհատ:

— Մորո՛զովա... բավական է,— ասաց նա և շոյեց Նորեկի գլուխը:

Այդ միջոցին դրսում հնչեց զանգը և ուսուցչուհին առանց խոսք ասելու շրջվեց, մոտեցավ իր սեղանին, վերցրեց դասամատյանը և արագ դուրս ելավ:

Նորեկին չորս կողմից շրջապատեցին, սկսեցին հարցուփորձել, համոզել, հանգստացնել: Մեկը վազեց միջանցք՝ ջուր բերելու:

Երբ զանգից հետո Ելիզավետա Իվանովնան նորից երևաց դասարանում, Մորոզովան արդեն չէր հեկեկում, միայն երբեմն քիթը վեր էր քաշում և ձեռքում սեղմում փոքրիկ, ամբողջովին թաց թաշկինակը:

Նա մի կերպ նստեց մինչև դասերի վերջը, և վերջին զանգը տվին թե չէ, շտապ հավաքեց իր գրքերն ու տետրակները պայուսակի մեջ և վազեց դեպի դուռը:

Կախարանի մոտ արդեն կանգնել էր Վալոդիկ Բեսոնովը և համարով տկտկացնում էր սեղանին:

— Գիտե՞ք, մորաքո՛ւյր,— ասաց նա,— մեր դասարանը մի նորեկ է եկել: Անունը Մորոզովա է: Նա Ուկրաինայից է եկել: Արևելյան... Ահա՛ նա...— ասաց Վալոդիկը՝ Մորոզովային տեսնելով: Ապա նայեց աղջկան, կնճռեց քիթը և ասաց.— Ի՞նչ է, լալկա՛նտզզան, չհաջողվե՞ց քեզ առաջ անցնել: Ամենից առաջ էլի ես դուրս եկա: Բա՜սս...

Նորեկը զարմանքով դիտեց նրան, իսկ նա չըլթացրեց լեզուն, կրունկների վրա շրջվեց և սկսեց վերարկուն քաշել մի հատուկ ձևով՝ ձեռքերը միանգամից կոխելով թևքերի մեջ:

Վալոդիկի պատճառով Նորեկին չհաջողվեց դըպրոցից աննկատելի դուրս գալ: Մինչ նա հագնվում էր, հանդերձարանը լցվեց բազմությամբ:

Քայլելիս կոճկելով իր կարճ, սպիտակ նապաստակի մորթե օձիքով վերարկուն, նա փողոց ելավ: Անմիջապես նրա ետևից փողոց վազեց Լիզա Կումաչևան:

— Մորո՛զովա, դու ո՞ր կողմն ես գնալու,— հարցրեց նա:

— Այս կողմը,— ձախը ցույց տվեց Նորեկը:

— Օ՜, նշանակում է միևնույն ճանապարհով ենք գնալու,— ասաց Լիզան, թեև նա պետք է գնար բոլորովին այլ կողմ: Պարզապես նա շատ էր ցանկանում խոսել Նորեկի հետ:

— Դու ո՞ր փողոցում ես ապրում,— հարցրեց նա, երբ նրանք հասան անկյունին:

— Կոնվենսկում,— պատասխանեց Նորեկը և ավելի արագ քայլեց: Լիզան հազիվ էր հասնում նրա ետևից:

Նա շատ էր ուզում ինչպես հարկն է հարցաքննել Նորեկին, բայց չգիտեր ինչից սկսեր:



Նրա քիթը և ամբողջ դեմքը սառնամանիքից սաստիկ կարմրել էր, և Լիզան որոշեց, որ ավելի լավ է նախ խոսել եղանակի մասին:

— Ինչպե՞ս է ձեզ մոտ՝ Ուկրաինայում, ավելի տա՞ք է, թե՞ ցուրտ,— հարցրեց նա:

— Մի քիչ ավելի տաք է,— պատասխանեց Նորեկը: Հանկարծ դանդաղեցրեց քայլը, նայեց իր ուղեկցուհուն և հարցրեց.

— Ասա՛, շա՞տ հիմար բան էր, որ այսօր՝ դասարանում այդպես բարձր լաց եղա:

— Դե՛, ի՞նչ կա որ,— ուսերը շարժեց Լիզան:— Մեզ մոտ էլ են աղջիկները լաց լինում... Իսկ դու ինչո՞ւ լաց եղար, ի՞նչ պատահեց քեզ, հը՞:

Չգիտես ինչու նա մտածեց, որ Նորեկը նրան չի պատասխանի: Բայց Նորեկն ուշադիր նայեց Լիզային և ասաց.

— Իմ հայրիկը չկա...

Լիզան նույնիսկ կանգ առավ զարմանքից:

— Ինչպե՞ս թե չկա,— հարցրեց նա:

— Նա օդաչու է,— ասաց Նորեկը:

— Իսկ որտե՞ղ էր նա, Կիևո՞ւմ:

— Ո՛չ, այստեղ՝ ռազմաճակատում:

— Ի՞նչ է, նա պատերազմո՞ւմ էր:

— Դե իհա՛րկե,— պատասխանեց Նորեկը:

Եվ Լիզան նայելով նրան՝ տեսավ, որ նրա աչքերում նորից փայլում է արտասուքը:

— Իսկ ինչպե՞ս եղավ:

— Ինչպես ընդհանրապես լինում է պատերազմում: Թռավ, և ոչ ոք չգիտի ինչ պատահեց: Տասնմեկ օր է նրանից նամակ չկա:

— Գուցե ժամանակ չունի,— անվստահ ասաց Լիզան:

— Նա միշտ էլ ժամանակ չի ունեցել,— ասաց Նորեկը,— բայց և այնպես դեկտեմբերին ութը նամակ ուղարկեց...

— Այդպես,— ասաց Լիզան և գլուխը շարժեց:— Իսկ դուք ե՞րբ, վաղո՞ւց է, որ Կիևից եկել եք:

— Մենք անմիջապես նրա հետ եկանք, պատերազմի հենց սկզբին, երրորդ օրը:

— Մայրի՞կդ էլ եկավ:

— Իհարկե:

— Օ՜, երևի նա էլ է անհանգստանում,— ասաց Լիզան:— Երևի լաց է լինում: Հա՞:

— Ո՛չ,— պատասխանեց Նորեկը:— Մայրիկս կարողանում է լաց չլինել...

Նա նայեց Լիզային, արցունքների միջից ժպտաց և ասաց.

— Իսկ ես, տեսնում ես, չեմ կարողանում...

Լիզան ուզեց նրան մի լավ, ջերմ, սփոփիչ խոսք ասել, բայց այդ րոպեին Նորեկը կանգ առավ, պարզեց ձեռքը և ասաց.

— Դե՛, ցտեսությո՛ւն, այստեղից ես մենակ կգնամ:

(Վերջը՝ հաջորդ համարում)



digitised by A.R.A.R.@

# ՓՈՔՐԻԿԻ ԻՍԿԱԿԱՆ ԱՐՑՈՒՆՔՆԵՐԸ

*ԱԼԵՔՍԱՆ ՄԽԻԱԿՅԱՆ*



Արտակի վարժանքի դահուկավ ա զ ք ե ր ի, մեծ-մեծ բարձրություններից կատարած թռիչքների մասին խոսելիս Վահեի աչքերը ոգևորությունից փայլատակում են: Նույնիսկ արտասվակալում են աչքերը, այնքան է ոգևորվում Վահեն: Իսկական մանկապարտեզի երեխայի նման: Հենց դրա համար էլ դասարանում նրան Փոքրիկ ենք անվանում: Այսօր էլ նա անվերջ խոսում է Արտակի դահուկավազքերից: Իսկ Արտակը լսում է և լռում: Լռում է և փքվելու տեղ գլուխը կախում: Երևի Փոքրիկը ճիշտ է ասում: Երևի Փոքրիկին ինքը՝ Արտակն է պատմել: Իսկ մեզ չի պատմել: Շատ չի սիրում գլուխ գովել:

Դասարանով պատրաստվում ենք Ծաղկաձոր գնալ դահուկներ քշելու:

Փոքրիկը ոգևորությունից գոչում է.

— Չեմպիոնը Արտա՛կն է լինելու, պարզ է, իսկ Արտակից հետո ո՞վ կլինի...

Եվ նրա աչքերը նորից արտասվակալում են ոգևորությունից:

— Արտակից հետո Արամն է, հետո՝ Գնելը, հետո...

— Արտակից հետո թե ով է լինելու ամենաուժեղ դահուկորդը, կերևա Ծաղկաձորում,— ասում է աղջիկների չեմպիոն Նազիկը:

Արտակից հետո... Երանի ես լինեի Արտակի տեղը, մտածում եմ ես: Այսպես եմ մտածում, որովհետև մի քիչ թեք լանջով միայն կարող եմ սահել, մի ոտնաչափ թմբերի վրայով էլ վախվորած թռչել: Շատ անգամ էլ թմբին չհասած՝ վախենում եմ և ընկնում:

Արտակին նախանձում են դասարանի բոլոր տղաները, նաև նրանք, ովքեր թեք լանջերով կարողանում են սահել, ավելի բարձր թմբերի վրայով թռչել:

Ծաղկաձոր գնալու լուրը ոգևորել է բոլորիս, Արտակից բացի:

— Է՜հ, նա այնքա՜ն է սահացել Ծաղկաձորում, որ ձանձրացել է,— բացատրում է Փոքրիկը:

Աղջիկներն ավելի նախանձելի բան են ասում.

— Եթե Արտակը մեր դասարանում մրցակից ունենար, ինքն էլ կոգևորվեր: Բայց որ չունի, պետք է գա և մյուս տղաներին դահուկների վրա կանգնել սովորեցնի:

Ֆիզկուլտուրայի ուսուցիչն էլ իմացավ Արտակի չեմպիոնության մասին, զարմացավ:

— Ինչո՞ւ շուտ չէիր ասում, որ մեր դպրոցից քեզ էլ ուղարկեինք հանրապետական մրցումներին,— ասաց նա Արտակին:

— Նա չի սիրում գլուխ գովել,— Արտակի փոխարեն դարձյալ մեջ ընկավ Փոքրիկը:

Այսպես խոսում էին նախորդ օրերին: Իսկ այժմ բոլորս դահուկներով, մեր չեմպիոնին մեջներս առած, բարձրանում ենք ավտոբուս, ուղևորվում Ծաղկաձոր, որ մեզ սպասում է...

Մեզ սպասում է մի տխուր պատահար: Ավտոբուսից իջնելիս, Արտակը սայթաքում է, ոտքն ուժեղ ոլորում:

— Ի՞նչ եղավ,— վրա ենք թափվում մենք:

— Վա՜յ, ո՜տքս,— տնքում է Արտակը:

Օգնում ենք նրան, հասցնում ճամբարի շենքը, որտեղ գիշերելու ենք:

Արտակը տնքտնքալով ընթրում է, տնքտնքալով էլ պառկում: Տնքտնքում է նաև առավոտյան, երբ բոլորը վերցնում են դահուկներն ու դուրս գալիս ձյունածածկ բացատները:

— Ես կմնամ Արտակի մոտ,— ասում է Փոքրիկը:

— Արտակին ես կտանեմ



բժշկի մոտ ու կգամ,— ասում է ուսուցիչը,— դուք բոլորդ ինձ սպասեցեք մեծ բացատում:

— Պետք չէ՛, պետք չէ՛,— խնդրում է Արտակը:— Ոտքս մի քիչ ոլորվել է: Շատ չի ցավում: Պարզապես խանգարում է դահուկներով սահելուն: Ես ձեզ կսպասեմ սենյակում:

Ու կաղալով քայլում է մահճակալի շուրջը, համոզում ուսուցչին, որ վնասվածքը վտանգավոր չէ:

Մենք էլ ենք դուրս գալիս:

Սառնամանիքից ձյունը չորացել ու խշշան է դարձել: Փշրված ապակու հատիկների նման փայլում է արևի տակ: Սկսում ենք սահել: Ի՜նչ հաճելի է:

Երանի Արտակի նման չեմպիոն լինեի, բարձրանայի բացատի վերջի բլրակի գագաթն ու այնտեղից սուրայի դեպի աղջիկների խումբը: Նրանք տեսնեին իմ դահուկներից բարձրացող ձյան փոթորիկը, վախից ու զարմանքից քար կտրեին:

Բայց քանի որ Արտակի նման չեմպիոն չեմ, դրա համար էլ սահում եմ բացատի կենտրոնում, որ արագությունը քիչ լինի, որ հանկարծ դահուկներն ինձ ձորը չտանեն, ծառերին չխփեն:



digitised by A.R.A.R.@

Ինձնից վախկոտներ էլ կան: Նրանք սիրտ չեն անում բացատի կենտրոնում էլ սահել և միայն զգուշորեն քայլում են: Նրանց ծնկները վախից դողում են: Աղջիկների ծնկների նման: Եվ աղջիկների նման էլ վայր են ընկնում, ոտքերն ու դահուկները տնկելով վեր:

— Աղջիկնե՛ր, աղջիկնե՛ր,— ճամբարի կողմից ցածրաձայն կանչում է Նազիկը:

Աղջիկներն անմիջապես հավաքվում են նրա շուրջը: Նազիկն ինչ-որ բան է ասում նրանց, հետո բոլորը կամացուկ գնում են դեպի ճամբարի շենքը:

Երևի Արտակին բա՞ն է պատահել:

Տղաներով շտապում ենք նրանց ետևից: Նազիկը ձեռքով հասկացնում է, որ չաղմկենք, իրենից առաջ չընկնենք: Նրա խորհրդով հանում ենք դահուկները, պատի տակով զգուշորեն ու իրար ետևից առաջանում:

— Գազա՞ն կա պատի ետևում,— անհամբեր առաջ է մղվում Փոքրիկը: Նա ամեն ինչ ուզում է առաջինը տեսնել, առաջինը լսել:

— Մի՛ խոսի,— Փոքրիկին զգուշացնում է Նազիկը և ետ հրում նրան:

Հասնում ենք շենքի անկյանը և...

Պատի ետևում, թփերով շրջապատված նեղ բացատում, սղղալու փորձեր է անում Արտակը: Այժմ ամուր հենվել է ձեռնափայտերին, որ զսպի ցած սահող դահուկներն, ու ծնկները դողում են:

«Էլ ի՞նչ չեմպիոն, որ ոտքի ցավի պատճառով զրկվի սղղալուց»,— մտածում եմ ես:

— Նա ցավող ոտքով էլ բոլորին կհաղթի,— կրկին հիացմունքից փայլում է Փոքրիկը, գոռգոռում ու վեր-վեր թռչում:

Նրա ձայնից Արտակը սթափվում է, շրջվում դեպի մեզ, կորցնում հավասարակշռությունն ու վայր ընկնում: Մեջքի վրա է ընկնում, և ոտքերը, անվարժ աղջիկների ոտքերի նման, տընկվում են վեր:

— Վա՜յ,— տնքում է նա, նստում և բռնում է ոտքը:

Բայց ինչո՞ւ է աջ ոտքը բռնում, երբ երեկվանից շարունակ ձախ ոտքն է շոյել ու տնքացել:

— Ո՞ր ոտքդ է ոլորվել, Արտա՛կ:

— Վա՜յ,— շփոթվում ու կարմրում է Արտակը, բաց թողնում աջ ոտքը և ձախը շոյում:

Հետո վեր է կենում, դահուկները քարշ տալով և գլուխը կախ, գնում սենյակ:

Բոլորն ուզում են վրա թափվել և ասել, որ նա պարծենկոտ է ու ստախոս: Միայն Փոքրիկն է մի կողմ քաշվում: Նրա աչքերը նորից փայլում են արտասուքից: Միայն թե այդ արտասուքն արդեն ոգևորությունից չէ: Ափսոսանքից է և խղճական: Որովհետև փոքրիկը շատ էր ուզում, որ Արտակը ստախոս ու պարծենկոտ չլիներ, իսկապես չեմպիոն լիներ, թռչեր մեծ-մեծ բարձունքների վրայով, զարմացներ բոլորին:

## ՁՄԵՌ

*ԱՐԱՄ ՀԱԿՈԲՅԱՆ*

Փաթիլները իջան վերից,
Մարեց շունչը աշնան,
Ճերմակել է դաշտը նորից
Անցած տարվա նման:

Առվակները իրենց վրա
Առան վերմակ սառցե,
Որ չլինի ցրտից ձմռան
Ձկնիկները սառչեն:

Գիշերները՝ կծիկ-կծիկ
Ձյունե թել են մանում,
Պատուհանին իմ թափանցիկ
Ձեռագործ են անում:

## ԺԼԱՏԸ

*ԱԼԵՔ ԽԱՉՈՒՆՑ*

— Աշո՛տ, դու շատ տետրեր ունես,
Մեկը տուր ի՛նձ,— Հայկն ասաց:
Բայց Աշոտը՝ ժլատը այս
Մեկ ձախ նայեց ու մեկ աջ:
Թոթվեց կամաց նա ուսերը,
Ասաց շատ հեզ, շատ հուշիկ.
— Ինձ ասել են, որ ձվերը
Չպետք է տալ ուրիշի:

digitised by A.R.A.R.@

# „ՊԻՈՆԵՐ“-ի փոստարկղ

*Այս վերնագրի տակ այսուհետև դուք կկարդաք մեր ընթերցողներից ստացված ուշագրավ նամակները՝ իրենց դպրոցական ու պիոներական առօրյայի մասին:*

*Այն, ինչ տպագրվում է ստորև, արձագանքն է հանդիսանում Երևանի № 114 դպրոցի 6-րդ դասարանի աշակերտուհի Մարգարիտ Հովհաննիսյանի պատմվածքի, որ լույս է տեսել «Պիոներ»-ի 1972 թ. № 10-ում՝ «Ստեղծագործում են դպրոցականները» ընդհանուր խորագրի տակ:*

*Այս երկու նյութերը ջրի երկու կաթիլի պես նման են իրար և ցույց են տալիս, թե ինչպես դասը չիմացողի առաջ հուշողը միշտ էլ մնում է «մեղավոր» ու «սևերես»:*

*Քննարկեցե՛ք այս հարցը ձեր դասարանում կամ դրուժինայում և ձեր կարծիքն ուղարկեցեք մեզ:*

## ԽԱՉԱՏՈՒՐԸ «ՎԱՏ» ՍՏԱՑԱՎ

Մեր դասարանում դասը հուշելու կամ չհուշելու հետ կապված շատ հետաքրքիր դեպքեր են տեղի ունենում: Քանի որ ես առաջին նստարանին եմ նստում, դեպքերի զգալի մասը ինձ հետ է կապվում:

Հայոց լեզվի դաս էր: Դեռ դասամիջոցին Խաչատուր Ոսկանյանը ասել էր, որ իրեն պետք է հուշել: Ուսուցիչը նրան գրատախտակի մոտ կանչեց, և նա սկսեց կմկմալով պատմել: Երևում էր, որ դասագիրքը չէր բացել: Ես հասցրի միայն մի քանի նախադասություն հուշել, որովհետև ուսուցչուհին շարունակ ինձ էր նայում:

Խաչատուրը «վատ» ստացավ:

Դասն ավարտվել էր: Ես պատուհանից դուրս էի նայում, Խաչատուրը մոտեցավ ինձ ու նեղացած ասաց.

— Ինչո՞ւ չհուշեցիր:

— Որովհետև ուսուցչուհին շարունակ ինձ էր նայում:

— Ասա՝ չէի ուզում հուշել, պրծավ գնաց,— վիրավորված ասաց նա:

— Դու ինձնից նեղացե՞լ ես,— ժպտալով հարցրի ես:

— Էլ հետս չխոսես, վե՛րջ,— զայրացած շպրտեց նա ու հեռացավ:

Աշխարհագրության ժամին նորից նա էր պատասխանողը: Ինձ մի երկտող գրեց: Կարդացի. «Ներողությո՛ւն, Վաղինա՛կ, հուշի՛ր»: Ցածրաձայն հուշեցի, բայց ուսուցիչը նկատեց և ասաց.

— Վաղինակ Միրզոյան՝ «2»:

— Ընկե՛ր Միրզոյան, ես եմ ասել, որ ինձ հուշի,— միջամտեց Խաչատուրը:

Սակայն դա ավելի զայրացրեց ուսուցչին, և նա երկուսիս էլ «վատ» նշանակեց:

ՎԱՂԻՆԱԿ ՄԻՐԶՈՅԱՆ,
Շամշադինի շրջ. գյուղ Չինարի, 7-րդ դաս. աշ.





digitised by A.R.A.R.@

# ԴՊՐՈՑ ԵՎ ԱՌՈՂՋՈՒԹՅՈՒՆ

Առողջությունը՝ ռեժիմն է: Շատ կարևոր է, թե աշակերտն ինչպես է հետևում իր օրվա կարգ ու կանոնին, ինչպես է համատեղում աշխատանքն ու հանգիստը:

Ո՞ր ռեժիմն ենք մենք համարում լավագույն:

Իհարկե, բոլոր փոքր ու մեծ սովորողների համար ռեժիմը միատեսակ լինել չի կարող: Բայց, այնուամենայնիվ, ինչ-որ ընդհանուր խորհուրդներ կարելի է տալ:

Առաջինը, որ անհրաժեշտ է հաշվի առնել, դասերը պատրաստելու ժամանակի տևողությունն է: Բարձր դասարանցիների համար այն չպետք է անցնի 3—4 ժամից, իսկ ցածրերինը՝ 1—1,5 ժամից: Կան երեխաներ, որոնց այդ ժամանակամիջոցը չի բավարարում, նրանց պետք է օգնել, որպեսզի դասերը յուրացնելու, մաքուր ու խնամքով աշխատելու լավ միջոցների տիրապետեն: Խորհուրդ չի տրվում դպրոցից վերադառնալուց անմիջապես հետո դասերը պատրաստել: Ամենաքիչը մեկ ու կես կամ երկու ժամ աշակերտը պետք է հանգստանա: Հանգիստը պետք է ակտիվ լինի: Ոչ մի դեպքում չի կարելի դասեր պատրաստել երկրորդ հերթի պարապմունքներից հետո:

Հեռուստացույցը մեծ դժբախտություն է երեխաների համար: Ես ինձ թույլ եմ տալիս այդպես արտահայտվել, որովհետև նրանք բավականին երկար են նստում երկնագույն էկրանի առջև: Դա մեծ ծանրաբեռնվածություն է տեսողական օրգանների և նյարդային համակարգի վրա:

*Ս. ԳՐՈՄԲԱԽ*
*պրոֆեսոր*



*ԻՈՆ ԿՐՅԱՆԳԱ*
*(Մոլդավ գրող)*

ի անգամ երկու ծանոթներ ճամփա էին գնում: Մեկի մախաղում կար երեք հաց, մյուսինում՝ երկուսը:

Շատ գնացին թե քիչ, սովեցին, նստեցին մի ջրհորի մոտ, փարթամ ուռենու հովին: Ամեն մեկը հանեց իր ունեցածը և, որ կերածը համով լինի, որոշեցին իմ ու քո չհարցնել, միասին ուտել: Նոր էին հացները հանել մախաղներից, երբ մի անծանոթ ճամփորդ մոտեցավ, բարև տվեց ու խնդրեց, որ իրեն էլ մի քիչ հյուրասիրեն, շատ է քաղցած, տանից բան չի վերցրել հետը, իսկ գնել էլ չի կարող, քանի որ ծախող չկա:

— Նստի՛ր, բարի՛ մարդ, նստիր կե՛ր մեզ հետ,— ասացին ճամփորդները:

Անծանոթը նստեց, և նրանք երեքով կերան ցամաք հացը, վրայից էլ ջրհորի պաղ ջրից խմեցին, որովհետև խմելու ուրիշ բան չկար:

Երեքով կերա՜ն, կերա՜ն, եղած հինգ հացերն էլ սրբեցին մինչև վերջին փշուրը, այնպես որ անես հացերը չէին էլ եղել: Այդ ժամանակ անծանոթը իր քսակից հինգ լեյ հանեց ու, բախտի բերմամբ,



digitised by A.R.A.R.@




Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

մեկնեց այն ճամփորդին, որը երեք հաց էր ունեցել, և ասաց.

— Վերցրե՛ք, բարի՜ մարդիկ, շա՛տ եմ շնորհակալ, որ ինձ կշտացրիք: Սրանով ճամփին մի-մի թաս գինի կխմեք կամ, դուք գիտեք, ինչ կուզեք՝ կանեք: Չգիտեմ, թե ոնց դուրս գամ ձեր լավության տակից, քաղցից աչքերս մթնել էին...

Նրանք սկզբում չէին ուզում վերցնել դրամը, բայց սա այնքան պնդեց, որ ի վերջո համաձայնեցին, վերցրին: Քիչ անց, անծանոթը հրաժեշտ տըվեց ու գնաց, իսկ նրանք նստած մնացին ուռենու ստվերում, որ մի քիչ էլ հանգստանան: Խոսքը խոսք բերեց, և ահա մեկը մյուսին ասաց.

— Ա՛ռ, ախպե՛րս, էս երկու լեյը՝ քեզ: Էս քո բաժինն է, ինչ կուզես՝ արա՛: Դու երկու հաց ունեիր, ուրեմն արդար կլինի, որ երկու լեյը քեզ հասնի: Իսկ երեք լեյը ես կվերցնեմ, որովհետև ես երեք հատ էպիսխ հաց ունեի:

— Ո՞նց թե,— նեղացավ մյուսը:— Ինչո՞ւ երկու լեյ տաս, և ոչ թե երկուս ու կես, պետք է հալալ կես անենք: Չէ՞ որ նա կարող էր մեզ ոչինչ էլ չտալ, բա էն ժամանակ ո՞նց կլինեն:

— Էն ժամանակ,— պատասխանեց մյուսը,— կասեինք, որ լավություն ենք արել էդ մարդուն. ես՝ երեք բաժին, դու՝ երկու: Էսքան մի բան: Իսկ հիմա մենք ձրի կերանք կշտացանք և դեռ քսակներս էլ փող ընկավ. իմը՝ երեք լեյ, քոնը՝ երկու, ամեն մեկիս՝ իր հացերի քանակով: Աստված ինքն էլ, երևի, սրանից լավ չէր բաժանի:

— Չէ՛, բարեկա՛մս,— առարկեց երկրորդը,— դու իմ հասանելիքը յուրացնում ես: Լավ է, եկ դատարան գնանք, ինչպես որ դատավորն ասի, էնպես էլ թող լինի:

— Է՛հ,— ասաց առաջինը,— թե որ դժգոհ ես, գնանք: Համոզված եմ, որ դատարանը իմ կողմը կպահի:

Այսպես էլ շարունակեցին ճամփան, մինչև որ եկան հասան մի քաղաք, ուր դատարան կար: Գնացին դատավորի մոտ, ամեն բան տեղը-տեղին պատմեցին նրան, եկան հասան դրամը կիսելու խնդրին:

Դատավորը երկուսին էլ ուշադիր լսելուց հետո, դարձավ դժգոհին ասաց.

— Դու, ուրեմն, կարծում ես, թե քեզ զրկե՞լ են քո հասանելիքից:

— Այո՛, պարո՛ն դատավոր,— պատասխանեց նա:— Մենք չէինք էլ ուզում անծանոթից դրամ վերցնել իր կերածի դիմաց, բայց քանի որ էդպես եղավ, ապա պետք էր հալալ կիսել տրված նվերը: Այ է՛ն ժամանակ, իմ կարծիքով, արդար կլինեն:



digitised by A.R.A.R.@

— Թե ուզում ես արդար լինի,— ասաց դատավորը,— ապա ուրեմն բարի եղիր ընկերոջդ վերադարձնել ևս մեկ լեյ, քանի որ նա երեք հաց է ունեցել:

— Օհո՜, էդ մեկն արդեն ձեզնից չէի սպասում, պարո՛ն դատավոր,— վրդովվեց հայցվորը:— Ես դատարան եկա արդարություն գտնելու համար, իսկ դու՝ օրենքի պաշտպանդ, ինձ ավելի խիստ ես զրկում ու նեղացնում: Եթե աստծո դատաստանն էլ էսպես է լինելու, ուրեմն՝ վա՜յ մեզ բոլորիս:

— Այդ քեզ թվում է,— սառնասրտորեն առարկեց դատավորը,— բայց իրականում բնավ էլ այդպես չէ: Քեզ մոտ կա՞ր երկու հաց:

— Հա՛, պարո՛ն դատավոր, երկու հաց ունեի:

— Իսկ ուղեկիցդ ունե՞ր երեք հաց:

— Հա՛, պարո՛ն դատավոր, երեքը:

— Խմիչք ոչ մեկդ էլ չունեիք, չէ՞:

— Չէ՛, պարո՛ն դատավոր, հացից ու սառը ջրից բացի, ոչինչ չունեինք: Թող ջրհորը փորողին էլ աստվա՜ծ օրհնի, թե չէ ճամփորդների բանը վատ կլիներ:

— Դու, կարծեմ, ինքդ ասացիր, որ բոլորդ հավասար չափով կերաք, չէ՞:

— Հա՛, պարո՛ն դատավոր:

— Դե. ուրեմն, եկեք հաշվենք, թե ձեզնից ամեն մեկը ինչքան հաց է կերել: Ենթադրենք, թե ամեն մի հացը երեք հավասար կտոր է արված եղել: Քանի՞ կտոր կստացվեր քո երկու հացերից:

— Վեց կտոր, պարո՛ն դատավոր:

— Իսկ քո ուղեկցի երեք հացերի՞ց:

— Ինը կտոր, պարո՛ն դատավոր:

— Իսկ բոլորը միասին քանի՞ կտոր կդառնար: Վեց և ինը:

— Տասնհինգ կտոր, պարո՛ն դատավոր:

— Քանի՞ հոգով եք կերել այդ տասնհինգ կտորը:

— Երեք հոգով, պարո՛ն դատավոր:

— Այսպես: Իսկ ամեն մեկիդ քանի՞ կտոր է ընկնում

— Հինգ կտոր, պարո՛ն դատավոր:

— Այժմ հիշի՛ր. դու քանի՞ կտոր հաց ունեիր:

— Վեց կտոր:

— Իսկ քանի՞ կտոր ես կերել:

— Հինգ կտոր, պարո՛ն դատավոր:

— Ուրեմն կերածիցդ քանի՞ կտոր ավելցուկ մնաց:

— Մեկ կտոր, պարո՛ն դատավոր:

— Իսկ հիմա գանք քո ուղեկցին: Հիշի՛ր, թե քանի՞ կտոր կստացվեր նրա երեք հացից:

— Ինը կտոր, պարո՛ն դատավոր:

— Իսկ դրանցից քանի՞սն է նա կերել:

— Հինգը, ինչպես՝ ես, պարո՛ն դատավոր:

— Իսկ նրա հացից քանի՞ կտոր է ավելացել:

— Չորս կտոր, պարո՛ն դատավոր:

— Ճիշտ է: Հիմա եկեք պարզենք հաշիվը: Դուրս է գալիս, որ քոնից մնացել է մեկ կտոր, իսկ ընկերոջիցդ՝ չորս կտոր: Իսկ դուք երկուսդ միասին ունեցել եք ընդամենը հինգ կտոր ավելի, քան ձեր կերածը:

— Ուղի՛ղ հինգ, պարո՛ն դատավոր:

— Ճի՜շտ է, որ այդ հինգ կտորը ձեր հյուրն է կերել, և ի երախտագիտություն, ձեզ տվել է հինգ լեյ:

— Ճիշտ է, պարո՛ն դատավոր:

— Դե, ուրեմն, քեզ միայն մեկ լեյ է հասնում մեկ կտորիդ դիմաց, իսկ ընկերոջդ, իր չորս կտորի դիմաց՝ չորս լեյ: Այնպես որ բարի եղիր վերադարձնել նրան մեկ լեյ: Եթե իմ դատավճիռը անարդարացի ես համարում, ապա դիմիր իրե՛ն՝ աստծուն, և թող նա ինձնից ավելի արդար դատի:

Հայցվորը, տեսնելով, որ էլ բան չունի ասելու, ճարը կտրած, վերադարձրեց մեկ լեյը և, ամոթահար, թողեց գնաց իր բանին:

Իսկ նրա ընկերը, այդքան իմաստուն վճռից հիացած, շնորհակալություն հայտնեց դատավորին և դուրս եկավ՝ ձեռքերը թափ տալով ու խոսելով ինքն իրեն.

— Եթե ամեն տեղ լինեին էսպիսի արդար դատավորներ, ապա անարդար մարդիկ հավիտյանս հավիտենից կերդվեին դատարաններում քարշ չըգալ:

Իսկ բարի մարդիկ դրանից միայն կշահեին:

*Թարգմ. ՀԱՄԱ ՀԱՐՅԱՆԻ*



digitised by A.R.A.R.@

# Ա Ճ Ա Ռ Յ Ա Ն Ի  Հ Ե Տ

ԳԱՌՆԻԿ ՍՏԵՓԱՆՅԱՆ

Երբ մի քանի էջ շարեցի, սըրբագրությունները հանձնեցի տըպարանի դիրեկտորին, որ ուղարկի Աճառյանին:

— Տարիքով մարդ է, աչքի մեկն էլ կույր, հարմա՞ր է, որ մենք նրան տպարան կանչենք,— ասաց ժպտալով,— կարծեմ դու սովորում ես համալսարանում, նրա տունը քո ճանապարհին է, կարող ես առավոտները սրբագրությունները տանել, դասերից հետո վերցնել: Այդ առթիվ էլ մոտիկից կճանաչես նրան, շատ հետաքրքիր մարդ է:

— Արդեն ճանաչել եմ,— ասացի երկիմաստ:

Չկարողացա մերժել: Բացատրեց տան տեղը:

Հաջորդ առավոտ սրբագրությունները վերցրի հետս և Կոնդից, որտեղ ապրում էի, ճանապարհ ընկա, անցա Սունդուկյանի անվան նեղլիկ փողոցը, (այժմ Լենինի անվան պողոտա), հասա Աբովյան: Այն ժամանակ փոխադրական միջոցներ չկային. երբեմն-երբեմն երկձի կառքեր կարող էին երևալ ամայի փողոցներում: Նոր-նոր տըրամվայի գծեր էին գցել: Աբովյան փողոցի երկու կողմերին ցածրահարկ, անշուք շենքեր էին, մայթերի մոտով գլգլալով հոսում էին առվակները:

Հասա բացատրված տունը: Իմ բախտից Աճառյանին գտա հենց բակում, մի դույլ ջուր լըցրած, բարձրանում էր աստիճաններով: Գլխին դրել էր գիշերային թասակ, հագել մինչև ծնկները ծածկող թաղիքե ճըտքավոր կոշիկներ: Նա ինձ չնըկատեց: Բարձր բարևեցի: Դույլը դրեց աստիճանների վրա, նայեց, սկզբում չճանաչեց, երբ ասացի, թե իր գրաշարն եմ, ուրախ ընդունեց ինձ և հրավիրեց վեր: Փորձեցի օգնել նրան: Չըհամաձայնվեց:

Բարձրացանք պատշգամբը: Բաց դռնից մտանք մի նեղ միջանցք, որի երկու կողմերին կային մեկ-մեկ դուռ: Ձախ կողմինը՝ Աճառյանի սենյակն էր:

Երկուսով մտանք ներս:

— Նստի՛ր,— ասաց,— հիմա կվերջացնեմ գործս, կխոսենք:

Մի քանի բաժակ ջուր լցրեց դռան ետևում կախված լվացարանը, մի քանի բաժակ էլ՝ թեյնիկի մեջ, կիսով չափ դատարկված դույլը ծածկեց կապույտ ստվարաթղթով, ավելի ծայրով դեպի անկյունը տարավ հատակին թափված թղթերը:

Մինչ նա զբաղված էր նման գործերով, ես հետաքրքրությամբ դիտում էի շրջապատս: Լսել էի, որ նրա կինը վաղուց մեռել է և ինքը ապրում է ամուրի մարդու անկազմակերպ կյանքով, բայց չէի ենթադրում, թե գտնվում էր այդքան պարզ ու համեստ պայմաններում: Դռան ետևում մի աթոռակի վրա դիզված էին կերակրի ամաններ, դանակ, պատառաքաղ: Սենյակի այս հատվածը ծածկված էր. հնամաշ մի ծածկոցով: Դռան աջ կողմը՝ դրված էր գույնը վաղուց գցած մի պահարան, որի փեղկերի ապակիներից մի քանիսին փոխարինում էին լրագրի թերթեր՝ փակցված սոսնձով: Կիսաբաց փեղկից երևում էր, որ նա այդ պահարանի մի մասում պահում էր սնընդեղենը:

Պահարանի դիմացը դրված էր նրա գրասեղանը, վրան՝ գըրքերի, թղթերի կույտեր, սեղանից քիչ այն կողմ՝ թիթեղյա վառարանն էր, մոտը՝ կոտրտած փայտեր: Գրասեղանի վերևում կախված էր յուղաներկ մի նկար, որից այս անհրապույր շրջապատըն էր դիտում գեղեցկադեմ մի կին:

Սենյակի այս բաժինը ներքնակողմից բաժանված էր մի մեծ վարագույրով, որի արանքից երևում էր երկաթյա հնամաշ մահճակալը, և մի բազմոց, վրան՝ դարձյալ գրքեր:

Երբ ամեն ինչ դասավորեց, հանեց թաղիքե կոշիկները, հագավ մուճակները, եկավ նստեց գրասեղանի մոտ ու ասաց.

— Հոդացավ ունեմ, դրա համար այս անպիտան կոշիկներն եմ հագնում:

Հանկարծ նրա հայացքն ընկավ պատից կախված նկարին.

— Կինս է՝ Արուսյակը, ութ տարի առաջ մեռավ, ինձ այս վիճակին թողեց:

Մի քանի րոպե լուռ մնալուց հետո ասաց.

— Է՛, անցնենք գործի: Խոստացել էի քեզ սովորեցնել վրացերեն և եբրայեցերեն տառերը:

Գրասեղանի վրայից վերցրեց մի թերթ թուղթ, գրիչով բաժանեց սյունակների, գրեց վրացերեն տառերը, կողքին՝ անունները, ապա՝ հայերեն համապատասխան հնչյունները, տվեց ինձ ու ասաց.

— Վրացերենը շատ հեշտ է, հայերենի նման ձախից աջ են կարդում, ամեն մի տառ մի հընչյուն է, և մեծ մասամբ էլ հայերենին համապատասխան, միայն նրանք մեծատառեր չունեն:

Վերցրեց մի նոր թուղթ, նորից սյունակների բաժանեց, ասաց.

— Եբրայեցերենը ավելի դըժվար է, հրեաներն ունեցել են մի քանի տեսակ տառեր, վերջին

---

Սկիզբը՝ № 1-ում:



digitised by A.R.A.R.@

# Ի՞ՆՉ ԵՆ

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ



նությունը մի վիթխարի գիրք է, որի էջերը լցված են բազմաթիվ պատմություններով։ Այդ պատմությունները վերաբերում են նրա լեռների ու ձորերի կազմությանը, նրա բուսական և կենդանական աշխարհի կյանքին։

Բայց ամեն մարդ չի կարող կարդալ այդ գիրքը. դրա համար պիտի ծանոթ լինել բնության «լեզվին», նրա բնակիչների կենցաղին ու սովորություններին։

Ահա հիմա փետրվարն է, մտնում ենք վաղուց մերկացած անտառը։ Սար, ձոր, թուփ ծածկված է ճերմա՜կ-ճերմակ ձյունով։ Եվ որովհետև շրջակայքը համատարած ճերմակ է, ուստի տարվա այս եղանակին անփորձ մարդու համար ավելի հեշտ է առանձին հատվածներ կարդալ բնության գրքից։ Համատարած ձյունը կարելի է համեմատել լայնածավալ ճերմակ թղթի հետ, որի վրա անտառի բնակիչները գրում են իրենց այս կամ այն արարքի մասին։ Ինչո՞վ են գրում։ Ամենից շատ՝ իրենց ոտքերով։ Դիտելով կենդանու ոտնահետքը, մենք՝ որսորդներս կարողանում ենք որոշել, թե ի՞նչ կենդանի է գնացել, օրվա ո՞ր ժամին և դեպի ո՞ւր է գնացել։ Որոշում ենք նրա նաև «հոգեկան վիճակը»։ Օրինակ, լեղապատառ փախե՞լ է (և ումնի՞ց), թե՞ խաղաղ տրամադրությամբ գնացել է կեր որոնելու։ Փորձված որսորդը կարողանում է հետքերից որոշել կենդանու մեծությունը (քաշը), սեռը, նույնիսկ գիրության աստիճանը։

Դա փորձվածը։ Իսկ անփո՞րձը։ Նրան սկզբում պետք է այբուբեն սովորեցնել։

Սկսենք տառաճանաչությունից։

Սա քարակզաքիսի հետք է (նկ. 1). վազելիս թա-

---

հազարամյակում սիրվածը քառակուսի կոչվող տառերն են, կարդում են ոչ թե ձախից աջ, այլ՝ աջից ձախ։

— Ինչպես արաբները,— ասացի։

— Այո՛, երկուսն էլ սեմական լեզուներ են։

Գրեց եբրայեցերեն տառերը, համապատասխան բացատրություններով, ասաց, որ ձայնավորների համար, բաղաձայնների վրա, տառի վերևի կամ ներքևի մասում դնում են նշաններ, հետո գրեց անունները՝ ալեֆ, բեթ, քեթ... հե, վավ և այլն։

— Շատ նման են արաբերեն տառերի անուններին,— ասացի, երևի ցույց տալու համար, թե ես էլ գիտեմ նման բաներ։

— Այո՛, մի քանիսը նման են, թե՛ արաբերենը և թե՛ եբրայեցերենը կապ ունին արամերեն տառերի հետ։

Հետո խոսեց փյունիկյան տառերի մասին, անցավ մեր տառերին, գովեց Մեսրոպ Մաշտոցի հնարամտությունը, որ այդքան կատարյալ տառեր է ստեղծել մեզ համար։

— Ամեն մի հայ,— ասաց,— երկու անուն պետք է լավ հիշի, մեկը Մեսրոպ Մաշտոցի անունը, մեկ էլ այն ուսուցչի, որ առաջին անգամ մեսրոպյան տառերը սովորեցրել է իրեն։ «Ա» տառը ումից որ սովորել ենք, նրան երախտապարտ պիտի մնանք մինչև մեր կյանքի վերջը։

Ես նրան լսում էի հափշտակությամբ, հիմա մի ուրիշ մարդ էր թվում, որքա՜ն տարբեր այն մեկից... խոսում էր հաճույքով, ուսուցչի հոգատարությամբ։

Հանկարծ սեղանի վրայից վերցրեց մի հաստ գիրք, բաց արեց։

— Եբրայեցերեն է,— ասաց։

Սկսեց կարդալ մի հատված՝ բարձրաձայն, նկատելի եղանակավորումով, կարծես երգում էր։ Ասաց, թե հրեաները և արաբները իրենց կրոնական գրքերը այդպես են կարդում, թե թուրքերն էլ Ղուրանն են այդպես կարդում։ Հետո ասաց.

— Իհարկե, ոչինչ չհասկացար։ Ես էլ շատ բան չեմ հասկանում, բայց այս հատվածը գրեթե անգիր գիտեմ։ Կարդացածս Սողոմոն իմաստունի առակներից մեկն էր, այն, որ 5-րդ դարում, Մեսրոպ Մաշտոցը մեր տառերը հնարելուց հետո, թարգմանեց հայերեն. դա հայերեն տառերով գրված առաջին գրությունն է։ Ամեն մի հայ պետք է իմանա գեթ առաջին նախադասությունը՝ **«ՃԱՆԱՉԵԼ ԶԻՄԱՍՏՈՒԹԻՒՆ ԵՒ ԶԽՐԱՏ, ԻՄԱՆԱԼ ԶԲԱՆՍ ՀԱՆՃԱՐՈՅ...»** Գրաբար գիտե՞ս։

— Շատ քիչ։

— Համալսարանում կսովորես։ Լավ լեզու է, հին հունարենին, լատիներենին հավասար լեզու, որ օտար համալսարաններում էլ սովորեցնում են մասնագետներին։

Այդ օրը ես այնքան բան սովորեցի, որ ինձ թվում էր, թե իսկական համալսարանը Աբովյան փողոցում գտնվող այդ փոքրիկ սենյակն է։

— Է՜,— ասաց հանկարծ,— հիմա ես անցնեմ աշխատանքի։

Հետո իմացա, որ դա նրա «երթաս բարովն» էր...

(Շարունակելի)



digitised by A.R.A.R.@

# ՊԱՏՄՈՒՄ ՀԵՏՔԵՐԸ

թերն այսպես զույգ-զույգ է դնում: Ձախ կողմինը նրա թաթն է՝ տակի կողմից: Տեսնո՞ւմ եք, որ մազմըզոտ-փրչոտ է: Ձմռանն է այդպես լինում, որ թաթը չմրսի՝ սառը ձյան վրա քայլելիս: Ձմռանն այդպես է նաև լուսանի թաթը (նկ. 2): Բայց միայն մրսելու հարցը չի. լուսանի թաթը բրդոտ պիտի լինի, որ փափուկ ու անձայն քայլերով մոտենա իր զոհին՝ քարի տակ քնած նապաստակին, թփից կոկոններ պոկող եղնիկին, ձյան տակ հաճար փնտրող սկյուռին: Նաև լայն է թաթը, որպեսզի ձյան վրա վազելիս չխրվի նրա մեջ:

Ահա ծառի տակ մի զույգ հետք ևս (նկ. 3): Ի՞նչ կենդանու հետք է: Սպասիր ուշադի՛ր նայենք: Ձախը նեղ է ու երկար. ուրեմն հետևի ոտքի թաթն է: Աջը կլոր է, ուրեմն առջևի թաթն է:

Այս գազանիկը ինձ մանկուց է ծանոթ, նույնիսկ մի տարի ձագեր էր հանել մեր ծմեռանոցի տանիքի խռիվի մեջ: Անտառային կատվի հետք է: Իրոք, երբ մի քիչ առաջ գնացի, տեսա, որ քիչ առաջ մի հաճարենու փչակից հանել է քնամուկ կոչվող կենդանուն, բզկտել է, արյունով ներկել ձյունը և կենդանու շեկ պոչը դեն նետելով՝ առաջ է գնացել հերթական զոհը փնտրելու:

— Բա որ կատվի հետք է, ո՞ւր են ճանկերը,— կհարցնեք դուք:

Ճանկերը ներս է քաշել, ծալել, որ չբթանա. չէ՞ որ դրանք վայրի կատվի հուսալի զենքերն են:

Ղափանի անտառում քայլելիս այսպիսի հետքերի հանդիպեցի (նկ. 4), որ թողել էր մի կենդանի՝ ձյունից նոր մերկացած կածանի ցեխին: Գորշուկ է:

Սա՞ ինչու է շուտ դուրս եկել բնից, ախր սրա ցեղակիցները Սևանի ավազանում մարտին հազիվ են արթնանում:

Զարմանալի բան չկա: Ողջիի հովիտն այնպես տաք էր, որ ձմռանը քուն մտնող բոլոր կենդանիներն էլ հավանաբար դուրս եկած լինեին իրենց որջերից:

Սպասիր հետքն ուշադի՛ր քննենք: Հետևի ոտքը գրեթե ծածկում է առաջին ոտքի հետքին: Հետո, առաջին թաթի ճանկերը շատ երկար են, նրանցով է, որ փորում է ստորգետնյա իր բնակարանն ու դեպի նա տանող թունելները:

Մի կենդանու հետք ևս նայենք, այս անգամ՝ Սևանի արևելյան ափի նոր գցած անտառում: Ջրասամույրի ոտքերի դրոշմն է (նկ. 5). փոքրը հետևի ոտքինն է, մեծը՝ առջևի: Այս դրոշմները ես տեսա Կարճաղբյուր գյուղի ներքևում, գետափի ավազների վրա:

Բայց ձյան մեջ ջրասամույրի հետքը այլ կերպ է: Հետքով առաջ գնացի, հասավ խոր ձյան ծածկոցին և այնտեղ կերպարանափոխվեց. կարծես փոքր գերան էին քարշ տվել ձյան վրայով: Ինչո՞ւ էր այդպես: Ասեմ: Ծանր կենդանի է, ոտքերը՝ կարճ: Խրվում է ձյան մեջ մինչև փորի տակը: Իսկ պոչը հաստ է ու երկար: Դե, այդպիսի կենդանին, որ ձյունը ճեղքելով և ահագին պոչը քարշ տալով գնա՝ ինչպիսի՞ հետք կթողնի:

Հիմա որ մի փոքր այբուբեն անցանք, սկսենք կարդալ մի էջ բնության գրքից:

Ահա մի շրջված կոճղի հետևից վեր է կացել և կերի


Նկ. 1


Նկ. 2


Նկ. 3

գնացել մի կենդանի: Անփորձ մարդը կարող է կարծել, թե բոբիկ մարդ է քայլել ձյան վրայով (նկ. 6): Բա ճանկե՞րը: Բա ոտքի ծուռ դրվա՞ծքը, որի համար ո՞ւմ, եթե ոչ արջին «ծուռթաթ» անունն են տվել:

Գնում եմ հետքով և հաստատ գիտեմ, որ գնացել է լեռան արևկող լանջի կաղնուտը՝ բացված խաշամի տակից կաղին հավաքելու:

Կանգ եմ առնում և ուշադիր զննում հետքը. այս ի՞նչ երկար են ճան-


Նկ. 4




digitised by A.R.A.R.@




Նկ. 5






Նկ. 6



Նկ. 7

կերը: (Նկ. 7)... Հա՛, բրդոտի ճանկերը երկարել են այն ամիսներին, երբ իր անձավում ձմռան քուն էր մտած:

Մի բանի վրա էլ ուշադրություն դարձնենք. աշնանը, երբ արջը շատ գիրացած է լինում, ոտքերի տակը (ներբանները) ճարպի շատությունից հավասարվում է: Իսկ հիմա հետքից տեսնում ենք, որ ներբանները կոր են՝ տակը փուչ է մնում, որովհետև ոտքը նիհար է: Դե որ ոտքը նիհար է, ուրեմն մարմինն էլ է նիհար: Եվ դա բնական է, 2—3 ամիս ոչինչ չի կերել, թաթը ծծելով մրափել է:

Հասա անտառի եզրի մի *կոզնենի* ծառի և զարմացած կանգ առա: Այս ո՞վ է թրատել-պատառոտել այս ծառի լանջը: Այս ո՞վ է ծվատել բնի կեղևը և թափել ձյան վրա (Նկ. 7):

Սա անպայման արջն արած կլինի, քանի որ, ահա, երևում է, հետևի ոտքերի վրա կանգնել է ծառի տակ , պուպուզ-պուպուզ է արել, իսկ առաջին ոտքերով գործել է վերևում, ծառի լանջին: Ձմռան ընթացքում երկարած եղունգները մաշեցրել կարճացրել է, որպեսզի չխանգարեն արագ վազելուն...

Սիրելի՛ երեխաներ.

Մենք ձեզ հետ միասին կարդացինք բնության գրքի միայն մեկ էջը: Երբ անտառ գնաք, փորձեք, առանց ուրիշների օգնության, կարդալ ուրի՛շ էջեր ևս և ձեր տեսածի ու հասկացածի մասին գրեցեք «Պիոներ»-ին:

# ՖԵՐՄԱՅՈՒՄ

ԳՐԻԳՈՐ ՄԱԶՄԱՆՅԱՆ

Ճերմակ շոր են սարերն հագել,
Դրել ճերմակ սաղավարտ:
Ձյունն է դաշտի ճամփան փակել,
Իրար կապել սար ու հանդ:

Նախիրն էլ չի գնում արոտ,
Դրսում գառնուկ չի մայում,
Հորթուկները՝ հանդի կարոտ,
Լուռ թախծում են ֆերմայում:

Ամեն օր ես, մեկ էլ Մերին
Ֆերմա գնում՝ տատի մոտ,
Խնամում ենք հորթուկներին,
Տալիս նրանց ջուր ու խոտ...

Ու կարոտով ամեն անգամ
Հորթերը մեզ են նայում,
Երբ ճիշտ ժամին ես ու Մերին
Հայտնվում ենք ֆերմայում:

# ՓԻՂԸ, ՃԱՆՃԸ ԵՎ ԷՇԸ

ՄՆԱՑԱԿԱՆ ԹԱՐՅԱՆ

Մի օր էշի մոտ գնացին
Ճանճն ու փիղը, թե.— Է՛շ ախպեր,
Արի դու էլ մեզ միացիր,
Գետի վրա կամուրջ կապենք:

Ու քիչ հետո ճանճը ասաց.
— Թեթև շինենք պրծնի գնա:—
Փիղը թե.— Ո՛չ, այնպես շինենք,
Որ քաշիս տակ այն դիմանա:

Էշն ընդհատեց.
— Զո՛ւր եք խոսում երկար-բարակ:
Նախ եկեք մենք մի հարց լուծենք.
Մեր կամուրջը գետի լայնքո՞վ,
Թե՛ երկայնքով
Պիտի գցենք...



digitised by A.R.A.R.@

# «ՄԵԶ ՏԱՐԱՆ ԱՆՀԱՅՏ ՈՒՂՂՈՒԹՅԱՄԲ»

Կիրովականի «Շինարար» ճամբարի դպրոցականները նորնոր ավարտել էին ընթրիքը: Պատրաստվում էին երեկոյան զվարճալի խաղերի, երբ երկար ու զիլ հնչեց տագնապի ազդանշանը: Զինվորական կարգապահությամբ հրապարակում ջոկատներով շարվել էր դրուժինան: Բոլորը տարակուսած, շշուկով հարցնում էին, թե ի՞նչ է պատահել: Սակայն ոչ ոքի, նույնիսկ ջոկատավարներին, ոչինչ հայտնի չէր:

Շտաբից դուրս եկավ ճամբարի պետ Մկրտիչ Սիմոնյանը և արագ քայլերով մոտեցավ ամբիոնին, նայեց հուզված-անհանգիստ շարքերին.

— Կատարվել է ճամբարային կյանքում մի բացառիկ և ցավալի դեպք. անհայտացել է առաջին ջոկատը: Նրանք հասցրել են թողնել միայն այս երկտողը. «Մեզ տարան անհայտ ուղղությամբ: Կաշխատենք որևէ ձևով թողնել մեր հետքերը: Շուտ հասեք օգնության»: Ջոկատի մասին ուրիշ տեղեկություն չունենք:

Ճամբարի պետը ցուցումներ է տալիս ջոկատներին, իսկ որսորդ Արոն, երեխաների պաշտպանն ու մոտիկ բարեկամը, վազելով վերցնում է հրացանը և որսորդական շանն առաջը գցած՝ ջոկատի հետքն է փնտրում:

Երեխաները, որ հուզվել, շփոթվել, կորցրել էին իրենց, հսկա որսորդ քեռուն տեսնելով, սրտապնդվում են և մեկնում որոնելու:

Վանաձորը ծայրեծայր լցվում է տագնապալի կանչերով: Յուրաքանչյուր պիոներ կանչում է նրան, ում անունը գիտի, ծանոթացել է ֆուտբոլ, վոլեյբոլ, սեղանի թենիս կամ զվարճալի խաղեր խաղալիս:

— Գոնե չմթներ,— դժգոհում է Արայիկը:

— Իսկ եթե նրանց շատ հեռու են տարե՞լ,— լացակումած ասում է Կարինեն:

— Ալբերտ քեռին անպայման կգտնի,— հուսադրում է Գևորգը:

Ու նորից շարունակում են երկար ու զիլ ձայներով կանչել.

— Հաս...մի՜կ...

— Կա...րե՜ն...

— Գուր...գե՜ն...

. . . . . . . . . .

Ձորում արդեն մութն է: Մեկ ժամվա որոնումները ոչ մի արդյունք չեն տվել: Չնայած շատերը հոգնել են, բայց այդ մասին ոչինչ չեն ասում, միայն վախով հարցնում են.

— Իսկ եթե չգտնե՞նք...

Ցերեկով անտառ մտնելիս ոչ ոքի մտքով չէր անցնում, որ այնտեղ կարող են գայլի, արջի ու այլ գիշատիչ կենդանիների հանդիպել, իսկ հիմա, երբ մութն է ու ընկերներին էլ տարել են անհայտ ուղղությամբ, ամեն ինչ նրանց աչքին այլ կերպ է երևում: Ցածր դասարանցիներից մի քանիսը վախից դողում են, լալիս: Ավագ ջոկատավար Էլմիրան հանգստացնում է նրանց, որ մենք շատ ենք, այդպիսի դեպքերում գիշատիչները վախենում են մարդկանցից:

Դիմացի բլրի վրայից լսվում է շեփորի աշխույժ կանչ: Թվում է, թե մի ամբողջ օր սպասել են դրան: Մի ակնթարթում անտառն ասես փոխում է իր տեսքը՝ լուսավորվում: Իսկ տխուր ու լացակումած կանչերին փոխարինում են հրճվալից աղաղակները, ուրախ աղմուկը:




Մինչև ջոկատների տեղ հասնելը խարույկ են պատրաստում: Օրվա հերոսը Աշոտ Մայիլյանն է: Նա է հայտնաբերել կորած ջոկատը, նրան էլ արժանացնում են խարույկ վառելու պատվին:

Խարույկի հրե լեզուները ճեղքում են գիշերվա խավարը, լուսավորում բացատում հավաքվածների դեմքերը: Լույսի տակ նրանց հրճվանքն ու ուրախությունը լրիվ-լրիվ նկատելի է: Ընկերներին կորցնելու ցավից շատերը արտասվել են, իսկ այժմ ուրախությունից են արտասվում ու արցունքոտ աչքերով էլ շեղշեղ ժպտում, ողջագուրվում: Շրջելու, փնտրելու հոգնությունը մոռացվել է: Երգում են, պարում, ուրախ խաղեր կազմակերպում, մինչև քնելու ժամը, որից հետո ջահերով իջնում են ճամբար, թեթևացած, ուրախ ու երջանիկ: Իսկ վերջում, երբ իմանում են, որ այդ ամենը կազմակերպված է եղել, ավելի են ուրախանում, շրջապատում ճամբարի պետին, խնդրում, որ հաճախակի կազմակերպեն այսպիսի խաղեր:

ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ



digitised by A.R.A.R.@

# ԵՐԳԻԾԱԿԱՆ ՄԱՆՐԱՊԱՏՈՒՄՆԵՐԻ ՆՄՈՒՇՆԵՐ ՀԱՅ ԲԱՆԱՀՅՈՒՍՈՒԹՅՈՒՆԻՑ

## ԱՇԱԿԵՐՏԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ

*— Ի՞նչ փոփոխության են ենթարկվում մարմինները ջերմությունից ու սառնությունից,— հարցրեց ուսուցիչը աշակերտին:*

*— Մարմինները ջերմությունից լայնանում են, իսկ սառնությունից սեղմվում:*

*— Ասա՛ մի օրինակ:*

*— Օրինակ՝ ամառը ջերմությունից օրերը երկարում են, իսկ ձմեռը՝ կարճանում:*

## ՄԻԱՄԻՏ ԳՅՈՒՂԱՑԻՆԵՐԸ

*Մի գյուղացի երեկոյան հաշվում է իր թխսի ճուտերը և տեսնում, որ մեկը պակաս է: Գնում կանգնում է կտրի վրա և սկսում է հայհոյել գողացողին: Դրացին լսելով նրա հայհոյանքը, ասում է. «Ես այսօր քաղաքից գյուղ էի վերադառնում, տեսա կամուրջի վրա, երկնքում, ուրուրը մի ճուտ էր տանում, անպատճառ քոնը կլիներ»:*

*Հավաքվում են բոլոր գյուղացիները, խորհուրդ են անում և որոշում են քանդել իրենց գյուղի կամուրջը, որպեսզի ուրուրը մյուս անգամ չկարողանա գետն անցնել և գյուղի ճտերը կամ հավերը որսալ:*

## ԼՈՒՍՆՅԱԿԻՆ ԿՈՒՐ ՏՎՈՂ ԷՇԸ

*Մի մարդ իր էշը լուսնյակ գիշերով տանում է ջրելու: Ջուր խմելու ժամանակ հանկարծ լուսնյակը երևում է ջրի մեջ և անմիջապես մտնում է ամպերի տակ: Մարդն ասում է.*

*— Վա՜յ թե էս իմ էշը կուլ տվեց լուսնյակը,— ու դանակը քաշում ճղում է էշի փորը: Նույն րոպեին*

# ԲԺՇԿԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴՆԵՐ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻՆ

Գրիպով հիվանդի հետ հանդիպելուց բավական է անցնի մեկ-երկու օր, իսկ հաճախ՝ մի քանի ժամ, և մարդը կարող է վարակվել ու անկողին ընկնել: Ահա թե ինչու այս հիվանդությունն աշխարհում շատ տարածված հիվանդություններից է և համաճարակների ժամանակ վարակում է միլիոնավոր մարդկանց:

Իսկ ի՞նչն է հիվանդության առաջացման պատճառը, բժշկական լեզվով ասած՝ հարուցիչը: Գրիպն ունի իր շատ մանր միկրոբները (մանրէները), որոնց վիրուս ենք անվանում: Գրիպի վիրուսներն ապրում և բազմանում են մեծ մասամբ մարդկանց շնչական օրգաններում՝ քթում, բրոնխներում, ինչպես նաև բերանի խոռոչում:

Մեծ չափով զարգանալով, այդ վիրուսները հազալու, փռշտալու, խոսելու ժամանակ տարածվում են օդում, ընկնում մարդկանց շնչական ուղիները և առաջ բերում հիվանդություն:

Իսկ ինչո՞ւ բոլորը չեն հիվանդանում գրիպով՝ կհարցնեն շատերը:

Չպետք է մոռանալ, որ կարևոր նշանակություն ունի նաև մարդու օրգանիզմի դիմադրող, պաշտպանողական հատկությունը: Մարդն ամեն օր և ժամ առիթ է ունենում հանդիպելու զանազան հիվանդությունների միկրոբների:

Կոփված, ամրապնդված օրգանիզմը կարողանում է հաջողությամբ պայքարել ամեն տեսակի հիվանդությունների, այդ թվում՝ նաև գրիպի դեմ: Այստեղից հետևություն՝ հարկավոր է մարմնամարզությամբ, սառը ջրով մարմինը շփելով, մաքուր օդում խաղալով, հանգստի և աշխատանքի խելացի կազմակերպման, ժամանակին սնվելու և այլ միջոցներով մշտապես կոփել, ամրապնդել օրգանիզմը:

Գրիպի դեմ պայքարելու մյուս միջոցը՝ անձնական առողջապահական վարքի կանոնների պահպանումն է:

Դպրոցականը պետք է իմանա, որ հազալիս կամ փռշտալիս պետք է բերանը ծածկել ձեռքով և մի կողմ դառնալ զրուցակցից: Հատակին չթքել: Զուգարանից օգտվելուց հետո և ուտելուց անմիջապես առաջ անհրաժեշտ է անպայման ձեռքերը խնամքով լվանալ օճառով: Մի կերպ լվացվելը ինքնախաբեություն է:

Չլվացված մրգերի, հատապտուղների և բանջարեղենի վրա մանրէները պահպանվում են երկար ժամանակ: Դիզենտերիայի հարուցիչը մրգերի և բանջարեղենի վրա պահպանվում է օրերով, շաբաթներով: Դրանք առանց լվանալու օգտագործելու դեպքում կարելի է վարակվել դիզենտերիայով, որովայնային տիֆով, ինչպես նաև ճիճվային հիվանդություններով: Ինչ վերաբերում է գրիպին, ապա այդ հիվանդությունով կարելի է վարակվել հիվանդի ափսեի, գդալի, բաժակի, երեսսրբիչի միջոցով: Ուրեմն՝ պետք է խիստ կերպով հետևել անձնական առողջապահության կանոններին, ունենալ առանձին երեսսրբիչ, բաժակ և այլն: Ճաշի սպասքը, օգտագործելուց հետո, պետք է խնամքով լվանալ և ողողել տաք ջրով:

Չափազանց կարևոր է դպրոցում, դասարաններում մաքրություն պահպանելը: Դասամիջոցներին պետք է աշխատել դասարանում կամ միջանցքում չվազվզել, փոշի չբարձրացնել: Գրատախտակը պետք է մաքրել խոնավ շորով:

Կարմիր խաչի դպրոցական ակտիվիստները պետք է աչալուրջ լինեն և խստորեն հետևեն դպրոցում սանիտարական կանոնների պահպանմանը:

*ՌԱՖԱՅԵԼ ՓԱՐՍԱԴԱՆՅԱՆ*

*պրոֆեսոր*



digitised by A.R.A.R.@

լուսնյակը նորից դուրս է գալիս ամպերի տակից: Մարդն ասում է.

— Ըհը՛, իսկապես որ էշս կուլ էր տվել լուսնյակը:

## ՀԻՄԱՐ ԴԱՎԹԻ ԽՈՐԱՄԱՆԿՈՒԹՅՈՒՆԸ

Մի օր Հիմար Դավթի տունը կրակ է ընկնում: Դավիթը ուրախ-ուրախ ման է գալիս ու ասում է. «Թեև իմ տունը այրվեց, բայց մկների հոգին էլ դուրս եկավ. բոլորը խանձվեցին ու վառվեցին, էլ գիշերը քնածս ժամանակ չեն կարող ինձ նեղացնել»:

## ԼՈՌԵՑԻ ՔՅՈՒՎԸՆ

Գիշերը գողերը քանդում են մի լոռեցու գոմի պատը և կովը տանում: Առավոտյան կովի տիրոջ հետ հավաքվում է գյուղի ժողովուրդը և մտածում, թե ո՞վ կարող է տարած լինել, բայց գլխի չեն ընկնում: Վերջը որոշում են դիմել գյուղի քյոխվին: Գալիս է քյոխվան, գլուխը պտտում և հավաքված մարդկանց հանդիմանելով, ասում է. «Զարմանում եմ ես ձեզ վրա, բա մարդիկ չե՞ք, հաց չե՞ք ուտում, էս ի՞նչ դժվար իմանալու բան է, որ չեք կարողանում գլխի ընկնել, ով որ էս պատը քանդել է, նա էլ տարած կլինի»:

— Ա՛յ, ա՛յ, որ ասում էի քյոխվան կիմանա,— դիմում են հավաքվածները մեկը մյուսին:

## ԵՐԿՈՒ ՍՈՒՏԱՍԱՆՆԵՐ

Երկու ստախոս տղաներ են լինում: Մեկն ասում է.

— Գիտե՞ս, իմ հայրը այնպիսի ղազան է սարքել, որ եթե մեջը հազար հոգի աշխատեն իրարից հարյուր քայլ հեռավորության վրա, մուրճի ձայնը չի հասնի նրանց ականջին:

— Հա-հա՜յ,— ասում է մյուսը,— էդպես էլ սուտ կլինի: Հիմի դու ականջ արա, ես ասեմ:

Ասում է.

— Հայրս այնպիսի մի բազուկ է ցանել, որ թուփը մի կողմից հասնում է Ախուրյան գետին, մյուս կողմից՝ Զանգուին, մյուս կողմից էլ՝ Քուռ գետին:

— Վա՜,— ասում է առաջին ստախոսը,— էդ բազուկը ո՞րտեղ պիտի եփեք:

— Հորս սարքած ղազանի մեջ,— ասում է մյուսը:




# ՎԻԵՏՆԱՄԻ ՊԱՏԱՆԻ ՀԵՐՈՍՆԵՐԸ

*Լե ԶԱՆ ԴԻՆԻ*

Վիետնամի Դեմոկրատական Հանրապետության պիոներական կազմակերպությունը ծնվել է ֆրանսիական գաղութարարների դեմ մղած ազգային ազատագրական պայքարի բովում: 1941 թվականի մայիսի 15-ից՝ իր ծննդյան օրվանից մինչև այժմ, վիետնամցի պիոներները բազմաթիվ փառավոր էջեր են գրել ազգային-ազատագրական շարժման ու պայքարի պատմության մեջ:

Պիոներների առաջին սերնդի օրինակելի ներկայացուցիչ կարող է համարվել հետախույզ Կիմ Դոնգը: Նա 14 տարեկան էր և աշխատում էր որպես հեղափոխական կազմակերպության կապավոր: Բացի այդ, Կիմ Դոնգը պիոներական ջոկատի հրամանատար էր: Ջոկատի հիմնական խնդիրը երեխաների ուսումը կազմակերպելն ու կուսակցության անդամներին օգնելն էր:

1942 թվականի սկզբներին Կիմ Դոնգը հերթական առաջադրանքը կատարելիս թշնամիների ձեռքն է ընկնում: Նրան դաժանաբար տանջում են, բայց նա չի ասում, թե որտեղ է գտնվում հեղափոխության ռազմական պահեստը: Ոչ մի արդյունքի չհասնելով՝ թշնամիները սպանում են նրան: Նա ընկավ հերոսաբար, և դարձավ Վիետնամի հեղափոխության առաջին հերոս պիոները:

1945 թվականի սեպտեմբերին արդեն բազմաթիվ պիոներական կազմակերպություններ էին ստեղծվել Վիետնամում, երբ ֆրանսիական գաղութարարները նորից պատերազմ սանձազերծեցին Վիետնամի դեմ: Կիմ Դոնգի նման հերոսների թիվը անցել էր տասից: Երկրում լավ գիտեին հատկապես Լե Վան Տամին: Մի անգամ նա իմանում է, որ թշնամիները պատժիչ ջոկատ են ստեղծել: Նրան չի հաջողվում այդ մասին հայտնել պարտիզաններին և որոշում է շեղել ջոկատի ուշադրությունը: Վառելիքի պահեստի մոտերքում թշնամիները նկատում են ու կրակ բացում նրա վրա: Տեսնելով, որ ուրիշ ելք չկա, նա բենզին է լցնում իր վրա, այրվում և նետվում դեպի պահեստը: Պահեստը պայթում է: Դրանից հետո ժողովուրդը Լե Վան Տամին «կենդանի ջահ» է անվանում:

Վիետնամցի պիոներները այդ դժվարին պայմաններում կարո-



digitised by A.R.A.R.@




# ՄԱԳՆԻՍ

ԱՐՏԱԿ ՈՍԿԱՆՅԱՆ

## ԱՅԴՊԵՍ Է ՊԱՏՄՈՒՄ ԼԵԳԵՆԴԸ

*Մագնիս: Այս բառը, ինչպես վկայում է Պլատոնը, առաջին անգամ օգտագործել է Եվրիպիդեսը: Հնագույն աղբյուրներից մեկի վկայությամբ, մագնիս է կոչվել մագնիսը ի պատիվ հեքիաթի Մագնիս անունով եզնարածի, որի երկաթե մահակն ու բոկոտիների մեխերը կպել մնացել են ինչ-որ մինչ այդ անծանոթ քարերի: Իսկ Լուկրեցիոս Կարը իր «Իրերի բնության մասին» պոեմում գրում է, որ «մագնիս» բառը առաջացել է Մագնեզիա (այժմ Մանիսսա) գավառի անունից:*

*Ռուս ճանապարհորդ Վ. Տեյլորը անցյալ դարի 80-ական թվականներին վերստադառնալով Մագնեզիա կատարած ճանապարհորդությունից, գրում է, որ գավառից ոչ հեռու գտնվող Սիպիլ սարի փեշերին մինչև այսօր էլ հանդիպում են մագնիսական երկաթաքարի առանձին մանր ու խոշոր բեկորներ: Այդ սարի մասին վկայող տեղեկություններն ավելի հանելուկային բնույթ են կրել, քան ինքը՝ մագնիսը: Դրա պատճառն այն է, որ իրերի և երևույթների էությանը դեռևս անծանոթ մարդը միշտ էլ զարմանքով ու վախով է նայել այդ սարի վրա տեղի ունեցող կայծակի պարպմանը, որը ուղեկցվել է մեծ աղմուկով, ծխով ու բոցով:*

*Մոտ 3000 տարի առաջ, Չինաստանի վրա իշխող Խուանգ Թի կայսրը անտառում, գիշերվա թանձր խավարի մեջ, թիկունքից հարձակվեց և կոտորեց թշնամուն:*

*Խուանգ Թիի զորքը գուցե չկարողանար կողմնորոշվել ու մինչև լույս մնար անտառում, եթե չօգնեին սայլակառքի վրա տեղակայված և միշտ դեպի հարավ շրջվող խրտվիլակները:*

*Չեու Կուն կայսրը որոշեց վարձահատույց լինել հեռավոր Վիետնամից եկած դեսպաններին՝ բարեկամության և հավատարմության խորհրդանիշ հանդիսացող սպիտակ փասիաններով իր երկիրը մուտք գործելու համար, և հինգ կառք նվիրեց նրանց: Կառքերը շատ ուրախացրին դեսպաններին, քանի որ յուրաքանչյուրի վրա տեղակայված էր հարավը մշտապես ցույց տվող հարմարանք:*

---

դանում են նաև լավ սովորել: Ահա թե ինչ է պատմում Տուն Յուն գյուղի 7-ամյա դպրոցի դիրեկտորը. «Թշնամին մեր գյուղի վրա 36 թռիչք կատարեց և մոտ հազար ռումբ գցեց, բայց դպրոցական տարիքի բոլոր երեխաները դասերից չէին բացակայում... Կեսից ավելին «4» ու «5» գնահատականներ էին ստանում և Հո Շի Մինի օրինակելի թոռնիկներ համարվում»:

Դժբախտ պատահարի պատճառով պատանի պիոներ Հոա Սուան Տին կորցրեց երկու ձեռքը: Բայց նա անչափ շատ էր ուզում սովորել ու ետ չմնալ հասակակիցներից: Իր երազանքի մասին նա ասաց բուժող բժշկին: Վերջինս նրան պատմեց Հարավային Վիետնամի քնակչուհի Կամի մասին, որը հակաֆրանսիական պայքարի ժամանակ գրիչը կապելով կտրված ձեռքին՝ նամակ գրեց պրեզիդենտ Հո Շի Մինին: Պիոներ Տին որոշեց հետևել Կամի օրինակին և խնդրեց իրեն դպրոց ընդունել: Ուսուցիչը, ընկերները օգնում ու խրախուսում էին նրան: Դժվարությունները շատ էին, բայց տղան իր համառությամբ կարողացավ հաղթահարել և տարեցտարի ավելի լավ էր գրում ու դասարանից-դասարան փոխադրվում միայն գերազանց գնահատականներով: Բացի այդ, որպես պիոներ, Տին լրացուցիչ կերպով նաև դասավանդում էր գյուղի կուլտուրական մակարդակի բարձրացման դասարաններից մեկում:

Լիեն Շոն գյուղի միջնակարգ դպրոցի պիոներական ջոկատը նախաձեռնեց «Սովորել և աշխատել լավ մարդկանց ու նրանց գործերի օրինակով» շարժումը: Այն ընդունվեց և թերթում տպագրվեց «Մրցություն հազարավոր լավ գործերի համար» խորագրով: Պիոներները կամավոր կերպով անում են այն, ինչ օգուտ է բերում ժողովրդին, դպրոցին, ջոկատին և իրենց ընտանիքին: Այդ շարժումը այժմ լայն տարածում է գտել երկրում:

Իր 32-ամյա փառավոր պատմության ընթացքում Վիետնամական պիոներական կազմակերպությունը կուսակցության և աշխատավոր երիտասարդության միության ղեկավարությամբ մեծ փորձ է ձեռք բերել: Միլիոնավոր վիետնամցի հայրենասերներ է դաստիարակել, որոնք հերոսաբար կռվում են իրենց հայրենիքը ամերիկյան իմպերիալիստների ձեռքից ազատագրելու համար: Նրանք արժանի են իրենց հոշիմինյան երիտասարդների հերոսական սերունդ կոչելու:




digitised by A.R.A.R.@

Հնարավոր է, որ առաջին անգամ հենց այս լեգենդացած պատմություններում է հիշվում կողմնացույցը: Եթե այդպես է, ապա մարդու ծանոթությունը մագնիսի հետ մոտ 3000 տարվա պատմություն ունի:

Եթե նույնիսկ չհավատանք այս տվյալներին և նշված հարավացույցերը համարենք լեգենդները զարդարող հնարանք, ապա բոլորովին էլ լեգենդ չէ այն փաստը, որ մ.թ.ա. 121 թվականի հանրագիտարանում Գուի Չին նկարագրում է և՛ մագնիսը, և՛ մագնիսական ասեղը: Այնպես որ մագնիսը մարդկության նպատակներին ծառայեցնելու նախապատվությունը տրվում է Հին Արևելքի ժողովուրդներին:

Հետաքրքիրն այն է, որ այս փաստերը չխանգարեցին իտալացիներին Նեապոլում 1302 թվականին հուշարձան կանգնեցնելու Ամալֆի քաղաքի բնակիչ Ֆլավիո Ջոյայի պատվին՝ իբրև կողմնացույց ստեղծողի և 1902 թվականին էլ նրա 600-ամյակը մեծ շուքով տոնեցին: Ավելին. իտալացիները ոչ միայն հավատում են դրան, այլև լեգենդներ են հյուսել դրա շուրջը և մինչև այսօր էլ պատմում են:

Ահա այդ լեգենդներից մեկը:

...Վաղո՜ւց, շա՜տ վաղո՜ւց, երբ Վենետիկի նման դեռ ծովի վրա ծփում էր Ամալֆի քաղաքը, այնտեղ ապրում էր ոսկերիչ և դրվագող Ֆլավիո Ջոյան: Նա աղքատ էր և ուրախ, նաև սիրում էր Անջելային՝ հարուստ ձկնորս Դոմենիկոյի աղջկան:

Ձկնորս Դոմենիկոն չուզեց, որ իր աղջիկը դառնա աղքատ Ջոյայի կինը, դրա համար էլ նրա առաջ ծանր պայման դրեց՝ ուղղագիծ հետագծով լողալ և՛ մշուշապատ եղանակին, և՛ գիշերը: Պարզ է, որ դա անիրագործելի պայման էր. փորձեք հինգ րոպե աչքերը փակ թևահարել ջրում՝ երևի զիգզագով կամ կորով կվերադառնաք նույն տեղը, որտեղից սկսել էիք թևահարումը:

Բայց Ֆլավիոն վհատվողներից չէր: Երկար և հանգիստ խորհելիս նա հիշեց, որ դրվագման ընթացքում երկաթի մանր կտորների հետ օգտագործում է նաև մագնիսական քարեր: Մի օր նկատեց, որ եթե այդ քարերից մեկը դրվի ջրում լողացող խցանի վրա, ապա այն միշտ կշրջվի դեպի միևնույն կողմը: Ուրեմն լեգենդը հորինողների կարծիքով, ջրում ուղիղ հետագիծ պահպանելու համար, կարելի էր ապավինել մագնիսին: (Ի՞նչ կարող ես անել, այդպես է պատմում լեգենդը): Մեկ ամսից Ֆլավիոն ամուսնանում է գեղեցկուհի Անջելայի հետ: Ֆլավիոն «ստացավ» Անջելային, ձկնորսները՝ կողմնացույցը:

Այս բանաստեղծական դրվագը ենթադրել է տալիս, որ թեպետ Ֆլավիոն չի հայտնաբերել կողմնացույցը, բայց հավանաբար ժամանակակից տեսք է տվել նրան:

Ալեքսանդրիայի ճարտարապետներից մեկը՝ Հինոկրատը մագնիսաքարով սկսեց Արսինոյի տաճարի կամարների կառուցումը, ծրագրելով Արսինոյի երկաթյա արձանը կախված պահել օդում: Բայց այս հանդուգն հղացումը, ըստ երևույթին ճարտարապետի մահվան պատճառով, չիրագործվեց: Կարևորն այն է, որ մագնիսը օգտագործվել է նաև որպես շինանյութ:

Իսկ այնուամենայնիվ ինչո՞ւ է խոտորվում կողմնացույցի սլաքը: Ինչո՞ւ է մագնիսը ձգում: Այս հարցերի մասին կկարդաք ամսագրի հաջորդ համարում:

(Շարունակելի)


Լույս է տեսնում 1923 թվականից:



# ՊԻՈՆԵՐ

№ 2 փետրվար 1978 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
նկ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՍԱՄՎԵԼՅԱՆԻ


Գլխավոր խմբագիր ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԽԱՆՅԱՆ Վ., ԹԱՓԵՎՈՍՅԱՆ Թ., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆԶՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Адрес редакции: 375200 Ереван 15, ул. Красных банков, № 15.

Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15:

Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:

ՎՖ 06088: Պատվեր՝ 1989: Տպաքանակ՝ 83506: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 14/II 1978 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության վարչության Ա. Մյասնիկյանի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:




digitised by A.R.A.R.@

ԳԻՆԸ՝ 10 Կ.
ԻՆԴԵՔՍ՝ 77806



# ԱՐՋՆ ՈՒ ԱՂՎԵՍԸ

*ԹԱԹՈՒԼ ԲՈՒՐՋՅԱՆ*

Սովն էր տանջում չեկ աղվեսին,
Փնթփնթում էր ձմռան կեսին.
— Երբ որ տաք էր, կանաչ գարուն,
Չէր երևում հետքս սարում:
Սիրտս չուներ ո՛չ ահ, ո՛չ դող
Որսորդներից հետապնդող:
Հիմա ձյուն է, ես ի՞նչ անեմ,
Ախր ինչպե՞ս ինձ պաշտպանեմ,
Ման գամ ձորում թե վերևում՝
Թաթերիս տեղն է երևում:—
Լսեց նրան արջը քնած.
— Քո աղմուկից քունս գնա՜ց:
Ի՞նչ բողոք է և այդ ի՞նչ վեճ
Լուռ ու խաղաղ ձյուների մեջ:
Տե՛ս, փակել եմ երդիկ ու դուռ
Եվ ննջում եմ հանգիստ ու լուռ:
Սաստիկ ձմեռ պիտի լինի,
Գնա՛, աղվե՛ս, դո՛ւ էլ քնի.
Թե որ հանգիստ քնես ինձ պես,
Չի հետևի էլ ոչ ոք քեզ:

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

digitised by A.R.A.R.@